# ՈՒՐԱԽ ԵՐԳ

Խոսք և երաժշտ. Ա. ԼՈՒՍԵՆՑԻ

Մենք խնդուն ենք, մենք ժպ-տուն ենք,
վառ ա-րեվ է մեր հո-գում,
միշտ կան-չում ենք, կար-կա-չում ենք
հա՛ հա՛ հա՛ քրր-քր-ջում ենք
ու եր-գում: քրր-քր-ջում ենք
Coda
ու եր-գում: պայ-քա-րում ենք
ու եր-գում:

Մենք խնդուն ենք,
Մենք ժպտուն ենք,
Վառ արև է մեր հոգում,
Միշտ կանչում ենք,
Կարկաչում ենք:
Հա՛, հա՛, հա՛,
Քրքջում ենք ու երգում:

Մենք եռուն ենք,
Վառվռուն ենք,
Անշեջ հուր ենք մեր կյանքում,
Միշտ անում ենք,
Նվաճում ենք:
Տա՛ք, տա՛ք, տա՛ք,
Միշտ վինում ենք ու երգում:

Մենք ըմբոստ ենք,
Միշտ պատրաստ ենք,
Ալ դրոշն է մեր ձեռքում,
Սրտով քաջ ենք,
Աննահանջ ենք:
Քա՛ջ, քա՛ջ, քա՛ջ,
Պայքարում ենք ու երգում.



№ 6 1958 թ.
ՀՈՒՆԻՍ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



# Ո՞Վ Է ԱՌԱՋԻՆԸ

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

Հայկը հանկարծակի արթնացավ, ասես մեկը հրեց կողքին, թե՝ վե՛ր կաց, ուշ է։ Նա մի վայրկյան շարունակեց պառկած մնալ՝ վայելելով ծածկոցի ջերմությունը, հետո դեն նետեց վերմակն ու ելավ տեղից։ Մարմինը փշաքաղվեց։ Ցուրտ էր։ Նա նայեց իր շուրջը, ճանապարհորդական մահճակալների վրա պառկած ընկերներին։ Նկատեց, որ Ստեփանը բացվել է. կամացուկ մոտեցավ ու ծածկեց նրան։ Հետո դուրս եկավ վրանից։

Արեգակը դեռ չէր հայտնվել, թեև նրա ճառագայթները շեղակի ընկել էին Մրղուզ սարի վրա ու շիկացրել նրա լերկ գագաթը։

Հայկը քայլեց կանաչի միջով, հասավ դիմացի փոքրիկ բացատը, տարածեց ձեռքերը, լիակուրծք շնչեց վաղորդյան սառն ու թարմ օդը ու սկսեց մարզանք անել։ Թվաց, թե եղանակը տաքացավ։

— Արթնացել ես, հա,— հնչեց ինչ-որ տեղ։ Անտառը բոլորովին մոտիկ, խուլ արձագանք տվեց։

Հայկը շրջվեց ձայնի կողմը։ Ներքևից, բաղեղներով պատված կեչիների կողմից դեպի բացատն էր բարձրանում նրա ֆիզկուլտուրայի դասատուն՝ Սահակյանը։ Նա անդրավարտիքի փողքերը ծալել էր դեպի վեր, մինչև ծնկները, կոշիկները թաց էին ցողից։ Նրա աջ ձեռքում ջրաման կար, իսկ ձախով բռնել էր բարակ ճյուղերի մի փունջ։

— Իսկ ես շատ սառը աղբյուր գտա,— վերելքից թեթև հևալով շարունակեց Սահակյանը.

Նա մոտեցավ վրանին, ջրամանը դրեց ներսում, իսկ ճյուղերը կոտրատելով սկսեց խարույկ պատրաստել։ Քիչ հետո ճյուղերը թշշացին, ծուխ արձակեցին, ապա հանկարծ բռնկվեցին կարմրավուն, պայծառ բոցով։ Սահակյանը կաթսայի մեջ ջուր լցրեց, կախեց խարույկի վրա, ապա ձայնեց.

— Արթնացրո՛ւ տղաներին, Հայկ, ուշ է...

Ամբողջ խումբը օջախի շուրջը նստոտած ճաշում էր։

— Ա՜խ, տղերք,— չդիմացավ Արմենը,— ինչո՞ւ ախար ուտելու մրցում էլ չկա, է՛, ազնիվ խոսք բացարձակ չեմպիոն կդառնայի։

— Ուտելու մեջ չէ, բայց խոսելու մեջ հիմա էլ չեմպիոն ես,— ժպտաց Սահակյանը,— բայց ինձ թվում է այսօրվա մրցությունից հետո խոսելու ախորժակն էլ կփակվի։

Ծիծաղեցին։ Ու ամեն մեկը սկսեց մտածել առաջիկա մրցության մասին։ Դժվար է լինելու։ Հայկը, ի հարկե, ամեն ինչ կանի անցյալ տարվա չեմպիոնի իր կոչումը պահելու համար։ Բայց ո՞վ գիտի, բոլորն էլ լավ մարզված են։

— Մրցության պայմանները նույնն են, ինչ-որ անցյալ տարվանը,— երբ նախաճաշն ավարտվեց, ասաց Սահակյանը,— տարբերությունը միայն այն կլինի, որ այս անգամ ստարտը տրվելու է անջատ եղանակով։ Առաջին ճանապարհվողից երկու րոպե հետո միայն մրցման դուրս կգա երկրորդը և այսպես մինչև վերջ։ Հաղթող կհամարվի նա, ով ավելի կարճ ժամանակամիջոցում կհասնի նպատակա-

կեռին՝ Բյուրաշատ գյուղը։ Ես մոտոցիկլետով կգնամ այնտեղ ու կհաշվեմ ժամանակը։ Հարցեր կա՞ն...

Տղաները իրար նայեցին։ Բոլորի փոխարեն պատասխանեց Ստեփանը։

— Ոչ։

Այնուհետև վիճակ հանեցին։ Առաջինը պետք է գնար Արմենը, երկրորդը՝ Ստեփանը, երրորդը՝ Հայկը, չորրորդը՝ Վարդանը, հինգերորդը՝ Ռուբենը։

— Տղե՛րք, առաջնությունս զիջում եմ, ո՞վ է ուզում համարս։ Ուրիշ բան չմտածեք, հա, պարզապես «մեկ» թվանշանը որ տեսնում եմ՝ օրագիրս աչքիս առաջ է գալիս,— նորից կատակեց Արմենը։

Բայց այս անգամ ոչ ոք չծիծաղեց։ Հուզված էին։ Եվ ինչպե՞ս չհուզվել, երբ այս մրցությունում միայն հայտնի կդառնա, թե ով իրավունք ունի մասնակցելու պատանիների միջշրջանային մրցումներին։ Բայց միայն դա չէ. չէ՞ որ նրանք առաջին անգամ էին մասնակցելու 25 կիլոմետր տարածության նման պաշտոնական մրցության։

Արեգակը տղաներին տեսավ արդեն մրցության պատրաստ ու շողշողացրեց հեծանիվների փայլուն խողովակները։ Հայկը մի վերջին անգամ ձգեց պտուտակները, աչքի տակով նայելով ընկերներին, որոնք նույնպես զբաղված էին իրենց հեծանիվներով ու մտածեց. «Զարմանալի բան է սպորտը։ Ա՛յ, բոլորս էլ մոտ ընկերներ ենք, սովորում ենք միմյանց հետ, թվում է, թե դրանից ավելի միմյանց հասկանալ հնարավոր էլ չէ։ Բայց խնդրեմ՝ երկու տարի առաջ բոլորն էլ կարծում էին, թե Արմենն, օրինակ, կատակելուց բացի ուրիշ ոչնչի ընդունակ չէ, ամռանն անգամ դպրոց էր գալիս վիզը շարֆով ամուր փաթաթած ու անընդհատ փռշտում էր։ Տղաները հոգնել էին «առողջություն» ասելուց, դրա համար էլ մի թղթի վրա մեծ-մեծ տառերով գրել էին «Առողջություն, վարժապետ» ու փակցրել նրա նստարանին։ Բայց երբ հեծանվորդների խմբակի պարապմունքներին սկսեց հաճախել, ձմռանն անգամ վերարկու չէր հագնում։ Իսկ անցյալ տարի քիչ էր մնացել, որ հաղթի մեզ...»



Նա հանկարծակի զգաց, որ հուզմունքն անցել է, ու նրա սիրտը մի տեսակ ջերմությամբ լցվեց իր ընկերների նկատմամբ, հատկապես այդ խաղաղ ու կանաչ այգաբացի նկատմամբ։ Նա անսահման պահանջ զգաց արտահայտելու իր ուրախությունը ու հենց այնպես, բարձրաձայն կանչեց.

— Հը, ո՞նց եք, տղերք...

— Վերջում կերևա։

— Կամ, թեկուզ. քե՞զ ինչ։

Այս ու այն կողմից աշխուժորեն արձագանքեցին նրա ընկերները։

— Ինչ է, չլինի՞ վախենում ես,— գլուխը հեծանիվի վրայից բարձրացնելով, հեգնող աչքերով հարցրեց Վարդանը։

— Ոչ, ինչո՞ւ...

— Աչքիս էդպես է երևում,— նույն հեգնանքով ասաց Վարդանը,— գույնդ ոնց որ տեղը չի։

Տղաները ծիծաղեցին։ Այդ ծիծաղը վիրավորեց Հայկին։ «Զարմանալի տղա է այս Վարդանը,— խոսեց նա մտքում,— մի բան չի լինի, որ ասի առանց հեգնանքի, ինչո՞ւ, չեմ հասկանում։ Պարզապես չար սիրտ ունի, էլի»։

Ու նա հիշեց, թե ինչպես, երբ Վարդանն անցյալ տարի իրենց դպրոցն ընդունվեց ու առաջին քառորդում դժվարանում էր, ինքը՝ ջոկատխորհրդի որոշմամբ, որպես հարվածային, պարտավորվեց օգնել նրան։ Բայց երբ այդ մասին մի թեթև ակնարկեց Վարդանի մոտ, նա նայեց իրեն հենց այդ նույն, անտանելի հեգնոտ աչքերով ու առանց այլևայլության ասաց.

— Սիրելի ընկեր հարվածային, լավ կանես մտածես քո գերազանցիկ դառնալու մասին։ Ես առանց դայակի էլ յոլա կգնամ։

Ու, ճիշտ է, թեև մյուս քառորդում Վարդանն իրոք ուղղեց իր թվանշանները, բայց Հայկը չմոռացավ վիրավորանքը, և նրանց հարաբերությունները մնացին այդպես էլ չոր ու սառը։

«Չէ՛, պարզապես չար սիրտ ունի,— կրկնեց Հայկը,— ո՛չ Ստեփանը, ո՛չ Արմենը, ոչ մեկն էլ նրա նման չեն։ Մանավանդ Ստեփանը։ Ա՛յ, իսկական ընկեր, միշտ ժպտուն, միշտ ընկերասեր, առանց «ջանի» մի խոսք չի ասի. . .»։ Ու կարծես այդ միտքը հաստատելու համար, Ստեփանը հանկարծ կանչեց.

— Հայկ ջան, 14 բանալին այս կողմը գցիր, էլի։ Իմը չեմ գտնում։

Հայկը ժպտաց ու բանալին նետեց Ստեփանին։ Երկաթը փափուկ ընկավ կանաչ խոտի վրա, հենց Ստեփանի ոտքերի մոտ, որը վերցրեց այն ու սկսեց ամրացնել իր հեծանիվի պնդօղակները։

Անտառն ասես տեղահան եղավ։ Այդ ավտոմեքենան էր, որ հնչեց ու, վրանով և դաշտային մահճակալներով ծանրաբեռնված, բռնեց Բյուրաշատի ճամփան։ Քիչ հետո երևաց նաև մարզիչը։





— Վերջացրե՛ք, տղաներ, ու խճուղի դուրս եկեք, հինգ րոպեից հետո տրվում է ստարտը։

Հեծանվորդները արագորեն վեր կացան տեղերից, գործիքները լցրեցին պայուսակների մեջ, մի վերջին անգամ ստուգեցին անվադողերի ամրությունը ու հեծանիվների նստատեղերից բռնած կամ պարզապես ուսած, դուրս եկան ասֆալտապատ խճուղին։ Ամենավերջում քայլում էր Հայկը՝ առույգ ու թեթև։ Հետո հանկարծ մտածեց, որ ինչ-որ բան պակաս է, մոռացել է ինչ-որ բան։ Բայց ի՞նչ... Կնճռոտեց ճակատը, մտածեց, մտածեց, բայց այդպես էլ չկարողացավ հիշել, թե ինչ է մոռացել, Թափ տվեց ձեռքն ու առաջ անցավ։

Նրա 14 բանալին մնացել էր Ստեփանի մոտ...

* * *

— Ուշադրությո՛ւն։ Մա՛րշ։

Արմենը, որ լարվածությունից կծկվել էր հեծանիվի վրա, հանկարծ մեկեն բարձրացավ ու պոկվեց տեղից։ «Ժր՜ժժ, ժր՜ժժ»—լսվեց անվադողերի՝ ասֆալտին շփվելուց առաջացած ծանոթ ձայնը, ու հեծանիվն առաջ սլացավ։ Եվս մի քանի վայրկյան, և հեծանիվն ու հեծանվորդը ծածկվեցին աջակողմյան բլուրի ետևում, ասես կուլ գնացին նրան։



— Լա՜վ գնաց,— լռությունը խախտելով հիացած արտասանեց Հայկը,— լավ էր, չէ՞, Ստեփան։

Ստեփանը, որն արդեն հեծանիվի վրա էր և ամրացնում էր ոտքերի կաշեկապերը, արհամարհանքով ժպտաց.

— Ջհավատաս, կբռնեմ...

— Ուշադրությո՛ւն։ Մա՛րշ։

Ստեփանի սև, փայլուն մայկան միայն մի ակնթարթ ձգվեց, ապա հենց նույն վայրկյանին իսկ սկսեց փողփողալ քամուց։

«Գնա՜ց...— շշնջաց Հայկը, և չգիտես որտեղից նրա մեջ նորից արթնացավ հպարտությունը ընկերների նկատմամբ,— լավ են պոկվում տեղից. անցյալ տարվա հետ համեմատել չի կարելի»։ Նա դանդաղորեն մոտեցավ գլխիվայր դրած իր հեծանիվին, պտտեցրեց անիվները, սիրով ունկնդրեց նրանց ծանոթ բզզոցը, ապա կտրուկ շարժումով վերցրեց հեծանիվը, ուսեց ու մոտեցավ գծին։

— Թող բռնեմ, վեր չընկնես,— մոտեցավ նրան Վարդանը։

Նրա ձայնի մեջ Հայկը նորից հեգնանք զգաց, բայց ոչինչ չպատասխանեց, թույլ տվեց, որ Վարդանը բռնի հեծանիվը, բարձրացավ, ամրացրեց ոտքերի կաշեկապերը ու սպասեց ազդանշանի։

Սահակյանը բարձրացրեց ձեռքը։

Հայկը սկսեց հաշվել վայրկյանները։ Բուքերը հուզմունքից տրոփեցին։ Նա զգաց, որ դողում է։ Երևի այդ նկատելի էր, որովհետև Վարդանը չորչոր ասաց.

— Ի՞նչ ես քեզ կորցրել։

Հայկը վիրավորվեց նորից, դարձավ, ուզեց ինչ-որ բան ասել, բայց անմիջապես նկատելով մարզիչի ձեռքի շարժումը դեպի ցած՝ բարձրացավ ու թափով առաջ նետվեց։ «Արա՛գ, արա՛գ, որքան հնարավոր է, ինչքան ուժ ունես»—ոտքի ռիթմիկ շարժումների հետ կրկնում է նա՝ մտածելով հենց սկզբից ժամանակ շահել։ Հեծանիվն ասես հասկանում էր վարորդի մտադրությունը, որովհետև շարժվում էր հանգիստ, անաղմուկ ու արագ։ Ահա բլուրը։ Հայկը կտրուկ թեքվեց աջ։ Նրա դիմաց բացվեց երկար, ասես քանոնով գծված ասֆալտապատ խճուղին։

Աջ կողմում անտառն էր՝ հնադարյան անտառը՝ իր մեռնող ու նոր ծնվող ծառերով, անտառը՝ կորած բաղեղների ու մացառների մեջ, գեղեցիկ ու խորհրդավոր անտառը, իսկ ձախ կողմը ասես գորգ լիներ, կամ ավելի ճիշտ՝ մի մեծ ու լայն կտավ, որի վրա նկարիչն աշխատել էր տալ բոլոր

գույները, բոլոր նրբերանգները, մի փոքր ավելի գերադասելով կապույտը, որն սկսվում էր ճամփեզրի փոքրիկ ծաղիկներով ու գնում դաշտի միջով, հասնում մինչև սարերը և նրանց հետ ձուլվում երկնի լազուրին։

Բայց Հայկը չէր տեսնում այդ ամենը։ Ուրիշ ժամանակ նա գուցե կանգներ ու ժամերով անշարժ հիանար բնության այդ հոյակապ գեղեցկությամբ։ Բայց այսօր չէր կարող։ Այսօր նա միայն տեսնում էր սպիտակ, անվերջանալի թվացող ասֆալտը և այն փոքրիկ, սև կետը, որն ասես մեկ մոտենում էր, մեծանում, մեկ հեռանում ու կորչում աչքից։

«Ստեփանն է,— մտածեց Հայկը,— և ճանապարհն



էլ դար ու փոս է»։ Նա ավելի արագացրեց ընթացքը ու գնում էր առանց ետ նայելու, մեջքը աղեղնաձև ուռցրած, շնչելով միայն քթով։ Հանդիպակաց քամին ծեծում էր նրան, խփում դեմքին, վշշում ականջների մեջ, խանգարում ընթացքը։ Բայց Հայկը դա էլ չէր զգում։

«Ինչ էլ լինի, պետք է հասնել Ստեփանին, դրանով ես շահած կլինեմ ուղիղ երկու րոպե»։ Ահա միակ բանը, որ առկայծում էր նրա մտքում։ Նա այնքան էր կլանված իր խոհերով, որ նույնիսկ չէր էլ լսում ետևից եկող աղմուկը և սթափվեց միայն այն ժամանակ, երբ իր մոտով մեծ արագությամբ սլացող մոտոցիկլետի միջից Սահակյանը ձայնեց.

— Ապրես, Հայկ, շատ լավ է։

Մոտոցիկլետը հռնդաց ու անցավ։

«Գնաց դիմավորելու չեմպիոնին,— ժպտաց Հայկը,— բայց ո՞վ կլինի արդյոք այդ չեմպիոնը»։ Նա ավելի արագացրեց ընթացքը։ Թվում էր, թե հեծանիվը ոչ թե գնում, այլ պարզապես թռչում է։ Բայց և զարմանալի բան. որքան էլ Հայկը արագացնում էր ընթացքը, նրան թվում էր, թե դա էլի քիչ է, թե իր հնարավորություններից շատ դանդաղ է ընթանում։ Եվ ավելի ուժգին էր սեղմում ոտնակները։

Ճանապարհը դարձավ ոլորապտույտ։ Ոլորաններից մեկի ժամանակ Հայկին թվաց, թե բոլորովին մոտ, իր առջևում տեսավ Ստեփանի սև. փայլուն մայկան։ Դա ոգևորեց և կարծես մի նոր, թարմ ուժ տվեց նրան։ Նորից մի ոլորան, մեկը ևս և... Եվ Հայկը մոտ 20 մետր հեռավորության վրա տեսավ Ստեփանին։ Նա ընթանում էր բավականին մեծ արագությամբ, և նրա փոքր ինչ ներս ընկած մեջքից միայն Հայկը կռահեց, որ Ստեփանը հոգնել է։ Հաջորդ րոպեին Հայկն արդեն հասել էր Ստեփանին։

— Հոգնել ես, հա՞, Ստեփան,— ձայնեց նա աշխատելով խլացնել քամու աղմուկը,— արագացրու քիչ էլ։

Ստեփանը դարձավ դեպի նա։ Հայկը նրա փոքր ինչ կարմրած աչքերում զարմանք, վիշտ նկատեց։

— Դե արագացրու,— կրկնեց Հայկը ու թափով մի փոքր առաջ անցավ։

— Չեմ կարող,— հևալով պատասխանեց Ստեփանը,— թող մի քիչ ակիդ նստեմ։— Դա նշանակում էր, որ Հայկը պետք է դանդաղեցներ ընթացքը, հնարավորություն տար Ստեփանին ընթանալու անմիջապես իր ետևից և պաշտպաներ նրան հանդիպակաց քամուց, մի բան, որն արգելված է հեծանվային անջատ մրցություններում։

— Բայց դա խախտում է,— առարկեց Հայկը,— ինչպե՞ս կարելի է։

— Խնդրում եմ, Հայկ ջան, դատավորները հո չկան։ Ընկերներ ենք, չէ՞... Բա ես մնա՞մ...

Նրա ձայնի մեջ այնքան աղերսանք կար ու արցունք, որ Հայկը այլևս չկարողացավ մերժել։ «Ինչ լինելու է, թող լինի», չգիտես ինչ, թե Ստեփանի վրա բարկանալով մրմնջաց նա ու դանդաղեցրեց ընթացքը։ Ստեփանը հասավ նրան։

— Ես սա երբեք չեմ մոռանա,— Հայկի հեծանիվի ետևում պատսպարված շշնջում էր նա,— Հայկ ջան, ախպեր ջան։

— Դե լավ, լավ— մեղմացավ Հայկը,— միայն մի քիչ արագացնում եմ, այսպես երկուսս էլ հետ կմնանք։

Որոշ ժամանակ գնում էին լուռ, ինքնամփոփ։ Հայկն զգաց, որ ընկերն արդեն կանոնավոր, հանգիստ է շնչում և առաջարկեց առաջ անցնել։ Բայց Ստեփանը նորից խնդրեց.

— Չէ, դեռ լավ չեմ զգում, խնդրում եմ, Հայկ ջան։

Հանկարծ, երբ ֆինիշին մնացել էր ընդամենը 3—4 կիլոմետր, հեծանիվների միալար, մեղմ բզզոցի միջից Հայկն ինչ-որ անսովոր կոպիտ ձայն լսեց։ Ձայնը կրկնվեց։ «Մի՞թե,— Հայկը սարսափեց պատասխանել իր հարցին,— գուցե պատահականությո՞ւն է»։ Բայց հենց նույն վայրկյանին էլ, երբ թեքվում էր դեպի ձախ, զգաց, որ հեծանիվի անիվը թուլացել է և չի ենթարկվում իրեն։ Մազ մնաց, որ վայր ընկնի։ Նա աջ ձեռքը բաց թողեց ղեկից ու ետ տանելով բացեց պայուսակը։ Առանձնապես

դժվար բան չէ, պետք է հանել 14 բանալին ու դրանով բացել անիվը։ Բայց ո՞ւր է։ Նա փորփրեց ամբողջ պայուսակը, մեկ-մեկ մատներով շոշափեց բանալիները։ 14-ը չկար։ Եվ հանկարծ ուրախացած ճչաց։ Դե, իհարկե, 14 բանալին ինքը Ստեփանին տվեց։ Ահա թե ինչն էր մոռացել։

— Ստեփան,— կանչեց նա,— տուր 14 բանալին,— ու այլևս անկարող շարունակել ճանապարհը, լրիվ դանդաղեցրեց ընթացքը։

— Ի՞նչ բանալի,— առանց կանգ առնելու հարցրեց Ստեփանը։

— 14-ը, որ քեզ տվեցի։

Հեռվում երևում էր գյուղը ու նրա եզրին խռնըված բազմությունը։

— Վա՜յ, Հայկ ջան, մնաց խոտերի մեջ,— առանց ետ նայելու ձայնեց Ստեփանը՝ աչքերը հառած բազմությանը։

— Ի՞նչ... Ստեփա՜ն, Ստեփա՜ն...

Բայց Ստեփանն այլևս չէր լսում։ Նա գնում էր ամբողջ ուժով։ Երկար ժամանակ հանգստանալով Հայկի թիկունքում, նա այժմ շռայլորեն ծախսում էր իր կուտակած ամբողջ եռանդը, միայն թե շուտ հասնի գյուղ, չեմպիոնի կոչմանը։

— Ստեփա՜ն...

Հեծանիվը մի վերջին ճռինչ արձակեց ու կանգ առավ։ Հայկը վար ցատկեց և զայրույթից ու հիասթափությունից ընկավ ճամփեզրի խոտերի վրա։ Արցունքը բարձրացել էր նրա կոկորդը ու խեղդում էր նրան։ Հետո հանկարծ վեր թռավ տեղից, ուսեց հեծանիվը ու սկսեց հոգնած քայլերով վազել ասֆալտապատ խճուղով։

— Այդ ի՞նչ է եղել, Հայկ,— հնչեց նրա կողքին մի ձայն։

Հայկը շրջվեց։ Վարդանն էր։ «Հիմա կհեգնի նորից»— անցավ Հայկի մտքով ու նա համարյա գոռաց.

— Իսկ քե՛զ ինչ, գնա քո ճամփով։

— Ա՛յ քեզ հիմար տղա,— առանց չարության, հենց այնպես արտասանեց Վարդանը, իջավ, Հայկի ձեռքից համարյա խլեց հեծանիվը, նկատեց թերությունը, վազեց, իր հեծանիվի պայուսակից հանեց 14 բանալին, անմիջապես ամրացրեց պտուտակը ու հեծանիվը մեկնեց Հայկին։

— Դե գնա, շո՛ւտ։

— Վարդա՜ն,— հուզմունքից դողացող ձայնով մրմնջաց Հայկը,— Վարդա՜ն...

— Ի՞նչ Վարդան, Վարդան, շո՛ւտ արա, անունս նո՞ր սովորեցիր,— բարկացավ Վարդանը։

Հայկն ուզեց ինչ-որ բան ասել, բայց չկարողացավ, հենց ընթացքի ժամանակ թռավ հեծանիվի վրա ու սլացավ առաջ։ Գնում էր նա՝ մերթ ուղիղ ու հարթ, մերթ ոլոր ու թեք, արևոտ ճանապարհով, գնում էր նա իր կողքին զգալով ընկերոջ ջերմ շունչը։




## ԴԵՊԻ ԼՈՒՍԻՆ

Ա. ՊՈՂՈՍՅԱՆ

Ջոքեց ծորին մութը խորին,
Ապա ելավ նա արագ,
Իջավ թավուտ անտառներին
Ու սարն առավ թևի տակ։
Թողած ճամբարն այնտեղ՝ ցածում,
Բռնած սարի դիք ճամփան,
Դեպի լուսին են շտապում
Երկու ընկեր անբաժան։
Մի տարիքի տունկ են նրանք,
Գարնանաբույր, ժպտերես։
Մեկը ունի թխկու հասակ,
Թզենի է մեկն ասես։
— Կամա՛ց քայլիր, Երկար Մակար...
— Պստիկ Խոստիկ, շո՛ւտ արի.,.
— Շունչս կտրեց, իզուր չէկար
Մյուս կողմով անտառի...
— Վախենում եմ մյուս կողմից.
Այնտեղ գայլեր կլինեն...—
Ու լռում է իսկույն ահից
Երկար Մակարը անզեն։
— Գազանը քեզ ի՞նչ կանի որ,
Քեզ կկարծի աշտարակ.
Ապա կիջնի անտառը խոր,
Մրթմրթալով քթի տակ։
— Հե՜տո՞...
— Հետո կելնենք անվախ
Մինչև գագաթը սարի,
Ու գիշերը կանցնի խաղաղ
Կամ արկածով գուցե լի։
— Ա՛յ, ես էլ հենց այդ անորոշ
Արկածից եմ վախենում.
Հում-հում կուտի մեզ գայլը գորշ՝
Կծիծաղեն ճամբարում...
— Սուտ ես ասում բոլորվդ մեկ,—
Խոստիկն ասում է նրան,—

Չի մոտենա գայլը երբեք
Աժդահային քեզ նման։
— Հո չե՞ս խաբում։
— Կուզես՝ երդվեմ։
— Բայց թե բոլըս չի տեսնի։
— Ինչո՞ւ։
— Մութ է։
— Լույս կվառեմ՝
Թող քեզանից սարսափի…—
Ճամբարն այնպես թողած ցածում,
Բռնած սարի դիք ճամփան՝
Դեպի լուսին են շտապում
Երկու ընկեր անբաժան։
— Ակա՛նջ արա, Երկար Մակար.
Արջի ձայն է հասնում ինձ։
— Բա որ վագր լինի հանկա՞րծ.
Ջոկ կդառնանք անտերի։—
Այդ նույն պահին թփի տակից
Ուրիշ մի ձայն է լսվում։
Երկարն ընկնում է սարսափից.
— Վագրի մա՛յրն է մոտենում…
Ու եկողը ասում է բամբ.
— Էհե՜յ, ո՞վ ես, ձայն հանիր…
— Ես… ես… Խոստիկն եմ ես անձամբ։
— Դու երեխա ես, լռի՛ր,
Ես ասում եմ մեծի մասին։
— Ի՞մ… Ես էլ եմ երեխա…
— Հա՛, հա՛, հա՛, հա՛, դու մի ասի՝
Հանաքչի ես իսկական։—
Մոտ է գալիս մի ծերունի.
— Վա՛յ, մանուկ են իսկապես,
Մեկը՝ պստիկ մի թզենի
Մեկը՝ երկար թխկու պես։
— Ի՞նչ եք անում այս գիշերին,—
Հարց է տալիս խստադեմ։
— Մոտենայինք պիտի լուսնին,
Բայց ուշացել ենք արդեն։
— Լուսնի՞ն… լուսնին դու չես հասնի,
Նա շրջում է երկնքում,
Քո բոյն անգամ քեզ չի օգնի,
Արբանյա՞կ ես, ինչ է, դու։
— Բա ի՞նչ անենք։
— Դիմում գրեք
Ուղիղ Մոսկվա՝ Արբանյակ,
Իսկ առայժմ հետս եկեք
Տեսեք ինչ կա ժայռի տակ։—
Երկու փոքրերն ու ծերուկը
Ձայնի կողմը գնացին։
Իսկույն բացվեց հանելուկը,
Թակարդումն էր վայրենին։
— Գայլ է. երեկ տեսա սարում
Ու լարեցի թակարդն այս.
Դե գյուղ տանենք այս վայրենուն,
Այս գիշատչին պատուհաս։



— Իսկ հեռո՞ւ է գյուղը, պապի…
— Ճամբարի մոտ, ձորի մեջ.
Այն սառնորակ գետի ափին,
Որ չունի ծայր, չունի վերջ…—
Իսկ ընկերոջը իր պստիկ
Մակարն այսպես է ասում.
— Բա ի՞նչ անենք, սսս, Խոստի՛կ,
Մեզ կպատժեն ճամբարում…
— Կասենք, որ դու տարար մեզ սար։—
Խոստիկն ասում է պապին։
Նայում է պապն սպառնաբար.
— Պիոները չի խաբի…—
Ու տղերքն են իրար նայում
Հայացքներով մանկական,
Թե ոնց անեն, որ ճամբարում
Արդարանան այս անգամ։

## ԿԱՄՈՒՐՋԸ

Թավ անտառի բացատում
Ցրվել է ողջ մի ջոկատ.
Ծաղիկներ են հավաքում
Ու ծիծաղում են զվարթ։
Աղաղակով, աղմուկով
Թռչկոտում են…
Իսկ այն կողմը՝
Ճամփան երկար, լերկ ու քար,
Ոլորվում է ձորն ի վար.
Բայց ի՞նչ գործն է Մակարի,
Թե ճամփան ծուռ է գնում.
Նայում հեռու մի քարի,
Ուղիղ ճամփա է կտրում։
Իսկ Խոստիկը վազում դեռ,
Հևում, նեղվում է շոգից,
Ինչպես հոգնած մի թիթեռ,
Որ հալածվում է մեկից։
— Էհե՛յ, հասիր, շուտ արի,—
Ձայնն է հնչում Մակարի։
Պառկում է նա գետափին
Եվ սպասում Խոստիկին։
Շուտով Խոստիկն է գալիս,
Գետի երգով հիացած՝
Ընկերոջն է ձայն տալիս.
— Արի, Մակար, արի ցած…—
Որպես կանչին արձագանք՝
Որոտում է ջուրն ուժգին,
Իսկ Մակարը՝ աչքը փակ,
Խոմփում է գետափին։
— Զարթնի՛ր, Մակար…
— Օ՜ֆ, եկա՞ր։—
Պատասխանում է այսպես,—

Հետևիցս մինչ հասար,
Յոթը երազ տեսա ես:
— Դե լավ, վեր կաց գնանք:
— Ո՞ւր։
— Միանալու մերոնց հետ։
— Խոստիկ, էլ ետ չդառնանք:
— Բա ի՞նչ անենք, այ քեզ խե՛նթ:
— Շատ հեռու է կամուրջը,
Գետակն անցնենք լողալով:—
Ու նայում է իր շուրջը
Նա հայացքով անխռով:
— Բա աղջիկները հեռվից,
Թե նկատեն մեզ տկլո՞ր:—
Ու Խոստիկը ամոթից
Կուչ է գալիս գլխիկոր:
— Դե լավ, Պստիկ, դո՛ւ ասա,
Ո՞ր ջուրն ընկնենք։
— Ոչ մի ջուր...
— Հա, միջոցը ես գտա,—
Ասում է նա և հրճվում:
— Այդ ի՞նչ միջոց է, բարդի՛:
— Վազքով թռչենք այս ափից...
— Բայց նա շատ է կատաղի,
Թե մեջն ընկանք՝ կտանի:
— Ա՛յ քեզ Խոստիկ, լավ լողորդ,
Սա ի՞նչ գետ է Զանգվի մոտ...
Ինչքան ուժ կա ոտքերում՝
Մակարն առաջ է ցատկում,
Ծիծաղում է, այն ափին
Շշմած թողնում Խոստիկին:
Ու Խոստիկը շարունակ
Հեռվից վազում անարգել,
Ափ է հասնում համարձակ,
Բայց վախենում է ցատկել:
— Ինչպե՞ս անենք, ի՞նչ անենք:
— Մակա՛ր, կամուրջ եկ սարքենք:
— Լավ ես ասում, թզենի,
Բա որ գերան չլինի՞:
— Վա՛յ, իսկապես մոռացա,
Որ հեռու ենք անտառից,—
Խոստիկն ասում տխրաձայն
Ու մտածում է նորից:
— Մակա՛ր, մի նոր միտք գտա՝



Սատանան էլ չգիտի.
Արի չափենք հենց հիմա
Քո բոյն ու լայնքը գետի:
— Որ ի՞նչ դառնա...
— Այ քեզ բան,
Կամուրջ կապիր մի վայրկյան.
Գերանը մեր քթի տակ՝
Ժամանակին չտեսանք:
— Ճիշտ ես ասում, եկ փորձենք,—
Ու եզերքից մինչ եզերք
Մեկնվում է մեր թխկին,
Որ գետն անցնի թզենին:
Մեկ էլ՝ թրը՛մփ... Նա հանկարծ
Լող է տալիս դեպի ցած...
Արդեն ջրկատն էլ ցածում
Խոսում է և կասկածում,
Թե գետն այն ի՞նչ է բերում.
— Գուցե տիղմ է ջրերում...
— Բայց շարժվում է վար ու վեր...
— Վա՛յ, Խոստիկն է, ընկերներ,
Նստել մի մեծ գերանի՝
Մեզ է փնտրում երևի:
Իսկ Խոստիկը ելնում դուրս
Ջրի միջից փրփրահույզ,
Քայլում է նա առջևից,
Իսկ գերանը՝ հետևից։
— Վա՜յ,—գոչում են բարձրաձայն,—
Ոչ փրփուր է, ոչ՝ գերան:
— Երկար Մակարն է, տղե՛րք,
Դիմավորե՛նք, մոտ բերենք։
— Ա՛յ քեզ կամո՛ւրջ,—Խոստիկի
Խոսքն է լսվում տխրաձայն...
— Դե ի՞նչ անեմ, երևի
Հաշվումները ճիշտ չեղան...
— Այո՛, Մակար, ի՞նչ քաշվել,
Չափդ սխալ ենք հաշվել...
Ուրախ նայում են թխկուն
Ու ծիծաղում են ահա,
Ծիծաղով էլ ավարտում
Էքսկուրսիան այդ օրվա...

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ





# Քաջ որսորդները

Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ

Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ



Ես, Խոստիկն ու Զաքարը,
Մեկ էլ Երկար Մակարը,
Զենք ու զրահ կապեցինք,
Մի օր որսի գնացինք։
Տեսանք մի թուփ. թփի տակ՝
Քնած մի չաղ նապաստակ։
Կամաց-կամաց, սուս ու փուս,
Մեկը մեկին. «Սուս, հա սուս»,
Կալմեջ արինք, բռնեցինք,
Տարանք ծառից կապեցինք։
Հոգնած, ջարդված, անոթի,
Մենք նստեցինք խորհրդի։
Խոստիկն ասաց. «Է՜յ, քաջեր,
Կարծիքն ինչ է հիմա ձեր.
Էս գազազած գազանին,
Ի՞նչ անենք, որ տագ անի»։
Մակարն ասաց. «Լավ կանենք,
Եթե մաս-մաս բաժանենք»։
— Լա՛վ, բաժանենք, բայց ինչպե՞ս.
— Մարմինը ինձ, պոչը ձեզ,
— Ոչ՛, այդ չեղավ, ա՛յ անխիղճ,
Մեր բաժինը շատ է քիչ.
— Դե լավ, նստենք անտրտունջ,
Իրար նայենք լուռ ու մունջ.
Ով մեզանից շուտ խոսի,
Որսից բաժին թող չուզի։
Չորս ընկերով նստեցինք
Եվ լուռ ու մունջ մնացինք.
Մեկ էլ տեսանք՝ էն անտեր
Նապաստակը սարն ի վեր,
Ո՜նց է փախչում լեղաճաք,
Թոկը թողած ծառի տակ.
«Փախա՛վ»—գոռաց Մակարը,
«Գնա՜ց»—ասաց Զաքարը,
Խոստիկն ու ես նրանց մեջ,
Լուռ մնացինք մինչև վերջ.
Տված խոսքը պահեցինք,
Եվ գրազը շահեցինք.



## ՊՍՏԻԿ ԽՈՍՏԻԿՆ ՈՒ ԵՐԿԱՐ ՄԱԿԱՐԸ ԲԵՄԻ ՎՐԱ

Ակումբը լեփ-լեցուն էր։ Հանդիսականները անհամբեր սպասում էին։ Ցերեկույթի գեղարվեստական մասը սկսվեց չորրորդ դասարանցիների երգի-պարի անսամբլի ելույթով։

Սակայն ցերեկույթում ամենահետաքրքիր նորությունը Գ. Յաղջյանի «Ուժի դեղը» պիեսի բեմադրությունն էր։ Ահա բեմ է մտնում յոթերորդ դասարանցի Վազգեն Արգարյանը, որը կարծես իսկ և իսկ ստեղծված է Մակարի դերի համար։ Ի՜նչ լավ է խաղում նա, ինչպե՜ս է ծիծաղեցնում հանդիսականներին իր սարօրինակ արարքներով։ Հապա Խոստիկը, հենց նա է, որ կա. գնդլիկ, ծանրաշարժ, սրամիտ ու խորամանկ այդ տղան, Մակարի անբաժան ընկերը։ Խոստիկի դերը կատարում է Լավրենտի Պետրոսյանը (6-րդ դասարան)։

Հաջող էին խաղում նաև Վոլոդյա Լալայանը, Մարուսյա Սիմոնյանը և Սոխակ Թամազյանը։ Դպրոցականները, որ «Պիոներ» ամսագրից արդեն ծանոթ էին մեր զվարճալի հերոսներին, այս անգամ էլ նրանց հանույքով տեսան գյուղական ակումբի բեմի վրա։

Արշ. ԾԱԼԿՈՒՆԻ
(Ալավերդու շրջանի Աքորի գյուղ)

Բեն Պետերսոնը մուտքի դռնից դուրս վազեց և արագ քայլեց, ոչ, համարյա վազեց էլեկտրական լապտերներով թույլ լուսավորված փողոցով։ Բենը շատ էր շտապում՝ նրա երեխան հիվանդացել էր։ Սկզբում ինքն ու կինը կարծում էին, որ իրենց փոքրիկ Թոմը շուտով կլավանա, և բժիշկ չէին կանչում, որովհետև շաբաթվա՝ սկիզբն էր, իսկ շաբաթ օրվա բերած աշխատավարձից մնացել էր ճիշտ այնքան, որքան պետք էր, որպեսզի յոլա գնան մինչև ուրբաթ։ Իսկ դրամ ճարելու ուրիշ հնար չկար։ Բայց ահա եկավ չորեքշաբթի օրը, իսկ երեխայի դրությունը չէր թեթևանում, ընդհակառակը, նույնիսկ ջերմությունը բարձրացավ էլի մեկ աստիճանով։ Դրա համար էլ նրանք այսօր, վերջապես, կանչեցին բժշկին։ Նա նախատեց հորը և մորը, ասելով, որ նրանց անփութության պատճառով երեխան հիմա շատ ծանր վիճակում է գտնվում՝ թոքերի երկկողմանի բորբոքում ունի։ Դեղատոմս գրելով, նա ասաց, որ Բենը վաղը անցնի իր մոտ և հայտնի երեխայի առողջության մասին։

Բենին անհրաժեշտ էր որքան կարելի է շուտ ճարել դեղը։ Իսկ մինչև դեղատունը ամենաքիչը մեկ կիլոմետր էր։ Նա վազում էր իր ուժեղ, մկանուտ ոտքերի ամբողջ արագությամբ։ Պատվիրելով դեղը և վճարելով շաբաթավարձի մնացորդը, նա նստեց նստարանին և սպասեց մինչև դեղը կպատրաստեին։ Պետք եղավ բավական երկար սպասել։ Ժամացույցի սլաքը համարյա արդեն հասել էր տասնըմեկին, երբ Բենը դեղատնից դուրս եկավ։ Նա իր խոշոր ձեռքի մեջ ամուր սեղմում էր հեղուկ դեղի փոքրիկ սրվակը և դեղափոշիների փաթեթիկը, ասես վախենալով կորցնել դրանք։ Նրա աչքերի առջև անընդհատ կանգնած էր փոքրիկ Թոմը՝ ջերմից այրված երեսով, լայն բացված, տենդագին փայլող աչիկներով։ Նրանց մեջ Բենը կարդում էր մի լուռ աղերս՝ «Շտապի՛ր», և դրա համար որքան էլ արագ քայլեր, դարձյալ իրեն թվում էր, որ վերջ չկա ճանապարհին։

Նա անցել էր արդեն երկու թաղամաս, ետևում էին մնացել ռեստորանը, լրագրային կրպակը։ Նրա ականջին հասան ինչ-որ բարձր ձայներ։ Եվս մի քանի տասնյակ քայլ անցնելով, նա տեսավ մի մեծ, ուրախ խումբ։ Տղամարդիկ ու կանայք էին, և բոլորն էլ բավական հարբած։ Զբաղեցնելով համարյա ամբողջ մայթը, նրանք մոլեգին շարժումներ էին անում և բղավում։

Նրանց հետ հանդիպելուց խուսափելու համար Բենը անցավ փողոցի մյուս կողմը։ Նկատելով այդ, տղամարդկանցից մեկը բղավեց.

— Ա՛յ մարդ, հե՜յ, ո՞ւր ես շտապում, կա՛նգ առ։

Բենը ոչինչ չպատասխանեց և արագացրեց քայլերը։ Բացականչությունը գրավեց ամբողջ խմբի ուշադրությունը.

— Կանգնի՛ր, ո՞ւր ես շտապում,— լսվեցին խառը, անկարգ ձայներ։ Բենը շարունակում էր լռությամբ գնալ։

Այդ ժամանակ խմբից բաժանվեց մի մարդ և երերուն քայլերով առաջ գնաց, կտրելով Բենի ճանապարհը, որը այդ պահին հավասարվել էր լապտերին։ Տղամարդը ընկերների հռհռոցի տակ կառչեց Բենի վերարկուի թևքից, և տեսնելով, որ իր առջև նեգր է, ծաղրանքով բղավեց.

— Ո՞ւր ես վազում, սև շո՛ւն։ Չե՞ս ցանկանում հանդիպել ազնիվ մարդկանց։ Երևի բան ես գողացել և դրա համար էլ...

Սակայն նա ետ հրվեց Բենի ուժեղ ձեռքից և սայթաքելով փլըվեց ասֆալտին։

Բենը քայլերն արագացրեց, համարյա վազեց, բայց զգաց, որ իրեն չի հաջողվի ազատվել այդ աներես մարդկանց ձեռքից։

Մնացածը կատարվեց մի քանի վայրկյանի ընթացքում։

Զայրությունը և վրդովմունքը եռում էին նրա մեջ։ Թերևս մի ուրիշ ժամանակ նա կանգ կառներ և դաս կտար գիշերային շրջմոլիկներին։ Նա չէր վախենում նրանցից։ Բայց չէ՞ որ նրան սպասում է փոքրիկ Թոմը։ Պետք էր շտապել։ Այն միտքը, որ երեխան պետք է հնարավորին չափ շուտ ընդունի դեղը, ծակում էր նրա ուղեղը։ Նա չէր կա-




Է. ՄԵԼԻՔ-ՆՈՒԲԱՐՈՎ

բող այլևս ոչինչի մասին մտածել։ Մնացած ամեն ինչի նկատմամբ անտարբեր էր։

Մի ակնթարթում բռնեցին Բենի վերարկուից, իսկ հետո ինչ-որ մեկը խփեց նրա մեջքին։ Նա դուրս պրծավ, պատրաստվելով շարունակել իր ճանապարհը, բայց արդեն ուշ էր։ Նրան շրջապատեցին հարբած զուգուացող տղամարդիկ։ Նրանց դեմքերը այլայլված էին ցասումից։

— Սե՛ շուն,— լսվում էր բոլոր կողմերից,— ինչպե՞ս ես դու համարձակվում, մենք քեզ ցույց կտանք, թե ինչպես պետք է կռվել։

Այդ բոլոր բացականչությունները ուղեկցվում էին ամենաբարձրորակ մասնագիտացված հայհոյանքներով և նզովքներով։

Բենը աշխատում էր ազատվել։ Բայց նա շատ էր վախենում դեղերի համար։ Հանկարծ այդ բոլորի հետ, դեռ կջարդեն սրվակը։

«Իսկ երեխան չի կարող այլևս մնալ առանց դեղի»—արագ անցավ նրա մտքով։ Եվ նա ավելի եռանդուն կերպով աշխատեց ազատ ձեռքով, իսկ մյուսով գրպանում ավելի ամուր սեղմեց դեղը։

Խուլիգաններից երկուսը ևս շպրտված էին մայթի ասֆալտին։ Այդ վայրկյանին նա զգաց մի ուժեղ հարված գլխին։ Աչքերի մեջ սկզբում վառ կերպով փայլատակեց ինչ-որ բան, և նա սրընթաց վայր նետվեց անդունդը։

Կայծակի պես ուղեղը թափանցող վերջին միտքն էր. «Հանկարծ չջարդվի՞ դեղի սրվակը»։

Հետո ամեն ինչ ծածկվեց խավարով։

Նեգրը ընկավ, սակայն դա չկասեցրեց նրա վրա հարձակվող թունդ առած մարդկանց։ Բենին ծեծում էին ձեռքերով և էլի ինչ-որ ծանր բանով։ Բենը չէր շարժվում։ Բայց խուլիգանները չէին հանդարտվում։ Նույն պահին այդ մայթն անցան նաև գիշերային ասպետների ընկերուհիները։ Տեսնելով, որ Բենը անշարժ պառկած է, նրանք սկսեցին հանգստացնել տղամարդկանց։

— Թողե՛ք, չէ՞ որ նա պառկած է,—ասաց կանանցից մեկը։

Այդ բացականչությունը որոշ չափով սթափեցրեց տղամարդկանց՝ նրանք դադարեցրին հարվածների տարափ տեղալ պառկած Բենի վրա։ Միայն մեկը նրանցից, որ ըստ երևույթին, բոլորից շատ էր իր վրա փորձել Բենի բռունցքի ուժը, վերջում ոտքով խփեց նրա մարմնին։

— Շո՛ւն,—մռմռաց նա ատամների արանքից, բարձրացրեց գետնից լայնեզր գլխարկը, թևանցուկ արեց իր ընկերուհուն և արագ հեռացավ։



Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Գորշ, ցուրտ առավոտը դանդաղ բացվում էր հսկայական քաղաքի վրա։ Ավելի ու ավելի աղոտ էր լուսավորում լապտերը։

Փողոցում հայտնվեցին հազվադեպ անցորդներ։ Սակայն նրանցից ոմանք չափազանց զբաղված էին իրենց մտքերով, մյուսներն էլ կարծում էին, որ նա մի հարբած ու քնած մարդ է։

Արդեն համարյա բոլորովին լույս էր, երբ ասֆալտի վրա պառկած Բենի շուրջը խմբվեցին մարդիկ։ Մոտեցավ ոստիկանը։

Նրան փորձեցին արթնացնել, սակայն ապարդյուն։ Այն ժամանակ նեգրին շրջեցին մեջքի վրա։ Նրա անկենդան գլուխը խուլ զարկվեց մայթին։

Մարդիկ լուռ էին։

Բենը մեռած էր։ Նրա դեմքը և հագուստը կրում էին իրենց վրա բազմաթիվ հարվածների հետքեր։ Երբ նրան դրեցին մեքենայի վրա, ոստիկանական բժիշկը նկատեց, որ մեռած նեգրը ջղաձգորեն սեղմված ձեռքում ամուր բռնել էր ինչ-որ հեղուկով լի մի փոքրիկ սրվակ։

— Տարօրինակ է,—մրթմրթաց նա,—ինչպե՞ս է ողջ մնացել միայն այդ շիշը, երբ այս մարդու մարմնի վրա ո՛չ մի առողջ տեղ չկա։

# ԾԻԾԵՌՆԱԿՆԵՐԸ

ՎԱՂԱՐՇԱԿ ՆՈՐԵՆՑ

1

Մեր առաստաղի գերանին կպած՝
Բույն էին շինել ծիծառներն հմուտ...
Մենք լուսամուտը թողնում էինք բաց,
Որ նրանք ազատ անեն ել ու մուտ։

Իրենց առաջին գալուստին գարնան՝
Ի՜նչ վարպետությամբ խառնած կավ ու թեփ՝
Գեղեցիկ, ինչպես կավե մի աման,
Շինել էին այդ բույնը կավածեփ։

Եվ գալիս էին, երբ ամեն տարի՝
Նորոգում էին բույնն այդ կավապատ,
Ապա ձվիկներ ածում էր մարին
Եվ թուխս էր նստում մի քանի շաբաթ։

Իսկ վարուժանը հսկում էր նրան,
Բերում էր նրան ամեն տեսակ կեր,
Երբեմն էլ նստում ձվերի վրա,
Որ մարին թռչեր, թևերը մարզեր։

Այդ թռչնակների ձագերին սիրուն,
Որ լցնում էին մեր տունն աշխուժով,
Մենք ամբողջ տնով շատ էինք սիրում,
Հետևում էինք միշտ ուշի ուշով։

2

Սերնդից-սերունդ միշտ, ավանդաբար
Մեղք էր համարվում քանդել թռչնի բույն.
Խիստ պատժում էին մեզ դրա համար,
Երբ մեկն անում էր նման չարություն։

Եվ հսկում էինք, որ նրանց բնին
Օձ չմոտենա, չհասնի կատուն,
Ձագ չփախցնի ոչ ուրուր, ոչ ցին՝
Միշտ գյուղի վրա սավառնող արթուն։

Այդ ամառ մեր գյուղն եկավ մի տղա,
Որ պարսատիկով թռչուն էր որսում.
Ոչ ոք նրա հետ չէր ուզում խաղալ,
Նրա հետ անգամ մենք չէինք խոսում։

Եվ ահա մի օր նա պարսատիկով
Օդի մեջ զարկեց մայր ծիծեռնակին...
Որտեղից-որտեղ մեր կատուն վազքով
Հասավ ու փախցրեց զարկված թռչնակին։

Իսկ վարուժանը, կարծես կոծելով
Իր ընկերուհու վախճանը տխուր,
Օդում մի քանի պտույտ գործելով՝
Ծվծվաց, թռավ, չգիտես թե ուր...

3

Մինչ մենք աղմկում էինք ու վիճում,
Նախատում էինք տղային այդ չար,
Նա արդեն լաց էր լինում ու զղջում
Իր աններելի արարքի համար։

Կատարվեց մի նոր զարմանալի բան.
Վարուժանը ետ եկավ մեծ թափով,
Ետևից անթիվ ծիծառներ եկան,
Եվ օդը լցվեց կանչ ու տագնապով։

Եվ աղմկեցին, ինչպես մեղվապարս,
Պտույտ գործելով մեր տան չորս բոլոր...
Հասկանում էինք բոլորս արդեն պարզ,
Որ թշնամուն են փնտրում նենգավոր։

Երկար տևեց այդ... և ապա բոլոր
Ծիծեռնակները մեկ-մեկ գնացին,
Միայն վարուժանն ու մարի մի նոր
Լուսամուտից ներս մտան, մնացին...

Հետո դուրս թռան, ներս եկան նորից,
Եվ կրկին հերթով միջատներ բերին,
Սիրով սնեցին որբացած մորից,
Արդեն փետրափոխ քնքուշ ձագերին։



Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

# Արդարացավ ԱՂՎԵՍԸ



Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Որտեղից-որտեղ,
Դուրս թռավ մի կայծ.
Այծի մորուքը
Բռնկվեց հանկարծ:
Վազ տալով եկավ
Աղվեսն իր որջից,
Հանգած ճրագը
Կպցրեց բոցից:
— Մի քիչ սպասիր,
Այծ իմ բարեկամ,
Ճրագս տանեմ,
Գամ քեզ օգնության...

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

## Հյուրասեր մկնիկը

Ա. ԴԱՐԲՆԻ

Մկնիկը նայեց
Ջուլպալ գետակին,
Հյուր կանչեց իր մոտ
Ոսկե ձկնիկին:
Եվ ձկնիկն ասաց.
— Հյուր կգամ սիրով,
Երբ բույնդ լցնես
Գետակի ջրով:



## Ձկնիկ



Հ. ՍԱՀՅԱՆ

(Պատկեր)

Ձկնիկն առվին խուտուտ տվեց,
Եվ առուն պարզ ու անբիծ՝
Քրքջալով ուշաթափվեց
Ու ծորն ընկավ քարափից:
Ջարկվեց քարին, ուշքի եկավ,
Շուրջը նայեց կասկածով
Ու մի կապույտ ժպիտ շրթին՝
Ճամփա ընկավ դեպի ծով:

## Վաչոյի անտառը



Դ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Փոքրիկ Վաչոն մի թուղթ բերեց,
Վրձինն առավ ու նկարեց:
Գույների տակ, դեղին ու վառ,
Թուղթը դարձավ աշնան անտառ,
Իսկ անտառում կար մի ժմակ,
Հետո՝ գայլի մի մեծ ոհմակ:
Երբ նկարը վերջացրեց,
Տատի առաջ Վաչոն դրեց:
Տատը նայեց ու ժպտերես
Ասաց.—Վաչո՛, պարկը բերես,
Ես ինչ լա՛վ էր, մտնեմ անտառ,
Կաղին բերեմ խոզի համար:—
Երբ կատակով ելավ տեղից,
Վաչոն իսկույն բռնեց թևից.
— Ախ, տատի՛, ու՞ր ես գնում,
Այս գայլերից չե՞ս վախենում:
— Վա՜յ, նոր տեսա, տա՛ր, հեռու տա՛ր,
Տատիդ արիր լեղապատառ:




*ՍԱՐՄԵՆ*

Ճերմակ աղավնի,
Նախշուն աղավնի,
Մեր ջինջ երկնքում
Ուրախ սավառնիր:

Դու խաղաղության
Խնդալի նշան,
Կապույտում բացված
Թևավոր շուշան:

Կյանքում դեռ այնքան
Չար բազեներ կան,
Բայց դու եթերում
Ցնծա հաղթական:

Թե շանթը շաչի,
Հողմը շառաչի,
Անգղը գիշատիչ՝
Թևն իր տարածի,

Դու չսարսափես.
Աչքի լույսի պես,
Մենք աշխարհով մեկ
Կպաշտպանենք քեզ:

Ճերմակ աղավնի,
Սիրուն աղավնի,
Կապույտ երկնքում
Ազատ սավառնիր:

## ԹԵ ՄԵԾԱՆԱՆ, Ի՞ՆՉ ԿԴԱՌՆԱՆ

*Ա. ՍԱՐՈՅԱՆ*

— Երբ ես շուտով մեծանամ,
Գիտե՞ս, թե ինչ կդառնամ։
— Ի՞նչ,— Սուրիկին նույն պահին
Հարց է տալիս Ջարուհին։
— Ես ինժեներ կլինեմ,
Մեքենաներ կշինեմ։
Իսկ դու, դու ի՞նչ կդառնաս,
Երբ ինձ նման մեծանաս։
— Ես մեծանամ,
Կդառնամ
Կամ պիոներ, կամ բժիշկ,
Կամ էլ մեկից կլինեմ
Հա՛մ պիոներ, հա՛մ բժիշկ։

## ՓՈՔՐԻԿ ԱՅԳԵԳՈՐԾԸ

*Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

Բահով հողը փորեցի,
Փոքրիկ տունկեր բերեցի,
Հողամասում մեր բակի
Տնկեցի ես մի այգի։
Շուտով այգիս կանաչեց,
Ճյուղեր տվեց ու աճեց։
Ամռան շոգ ու կրակին,
Երբ ծարավեց իմ այգին,
Բահը ուսիս դրեցի,
Ջուր տարա ու ջրեցի։
Վեր եմ կենում միշտ ծեգին,
Մշակում եմ ես հողը,
Որ շուտ աճի իմ այգին,
Առատ լինի խաղողը։
Այգեգո՛րծ եմ, այգեգո՛րծ,
Ունեմ երկու տարվա փորձ։





# ԱՆՏԱՌՈՒՄ ԱՄԵՆ ԻՆՉ ԼԱՎ Է, ՄԻԱՅՆ ԴԵՐՁԱԿՆԵՐՆ ԵՆ ՎԱՏ

Օ. ՊԱՆԿՈՒ-ՅԱՇ (Ռումինական գրող)

*Ամեն ամառ ես անց եմ կացնում անտառում, այնտեղ ազատ է, արձակ, արևոտ, ուրախ, և թվում է, թե ամեն ինչ լավ է։*

*Բայց, ինչպես գաղտնիք, պետք է ասեմ անտառի դերձակները վատն են, շա՜տ վատը, ուղղակի բանի պետք չեն։*

*Դուք, երեխանե՛ր, նրանց մոտ մի՛ գնացեք, խորհուրդ չեմ տալիս։*

*Լսեցեք, թե ինչ պատահեց իմ և անտառի կար ու ձև անող այդ վարպետների հետ։*

*Մոտենում էր մի տղայի՝ Ալեքսանդրի ծննդյան օրը, որի հինգ տարին էր լրանում։ Ես դեռ գարնանից նրան մի նոր բաճկոն էի խոստացել։ Իմ խոստումը նա շատ լավ էր հիշում և ամեն ինչ անում էր, որպեսզի ես էլ չմոռանամ։*

*Եվ ես ահա ճանապարհ ընկա դեպի անտառի արհեստանոցը, որտեղ աշխատում էին շրջակայքի հռչակավոր հինգ դերձակները։*

*Ես բացեցի արհեստանոցի դուռը և ողջունեցի․*

*— Բարև՛ ձեզ, — պատասխանեց վարպետ Ոզնին։*

*— Ողջո՛ւյն ձեզ, — վեր կացավ տեղից վարպետ Գայլը։*

*— Բարի՛ գալուստ, — գլուխ տվեց վարպետ Արջը։*

*— Համեցե՛ք, ներս եկեք, — հրավիրեց վարպետ Նապաստակը։*

*— Նստեցե՛ք, նստեցե՛ք, — աթոռը ցույց տվեց վարպետ Գորշուկը։*

*Հետո բոլորը միաձայն հարցրին․*

*— Ինչո՞վ կարող ենք ծառայել։*

*Ես նստելով աթոռին հարցրի․*

*— Դուք կարո՞ղ եք բաճկոններ կարել։*

*Հինգն էլ միասին պատասխանեցին․*

*— Կարո՛ղ ենք, կարո՛ղ ենք։*

*Ոզնին ասաց․*

*— Աշխարհի ամենագեղեցիկ բաճկոնները։*

*Գայլն ավելացրեց․*

*— Եվ ամենադիմացկունը։*

*Արջը վրա բերեց․*

*— Եվ առանց փորձելու։*

*Նապաստակը բացականչեց․*

*— Եվ առանց թերության։*

*Գորշուկը ճշտեց․*

*— Եվ շա՜տ էժան։*

*— Շա՛տ լավ, — ասացի ես, — որ այդպես է, խնդրում եմ, տղայիս՝ Ալեքսանդրի համար մի բաճկոն կարեք։*

*Այստեղ դերձակները խմբովին հարցրին․*

*— Իսկ ինչպիսի՞ն պիտի լինի այդ բաճկոնը։*

*— Դե, այնպիսին, ինչպիսին դուք ասացիք՝ գեղեցիկ, դիմացկուն, էժան, և որպեսզի ամեն ինչ իր տեղում լինի․ և՛ օձիքը, և՛ թևքերը, և՛ գրպանները։*

*— Օձիքներ կարող ամենալավ վարպետը ես եմ, — ներկայացավ Ոզնին։*

*— Գրպաններ կարող լավագույն վարպետը ես եմ, — գլխով արեց Գայլը։*

*— Ես թևքերի ամենալավ մասնագետն եմ, — գոչեց Արջը։*

*— Ես ամենալավ կոճակ կարողն եմ, — տեղում պտտվեց Նապաստակը։*

*— Ես ամենալավ աստառ քաշողն եմ, — տեղից բարձրացավ Գորշուկը։*

*Ապա բոլորը միասին ասացին․*

*— Մենք հրաշալի վարպետներ ենք։*

*Ես կտորն ընտրեցի, տվի Ալեքսանդրի չա-*

փերը և պայմանավորվեցինք գնի մասին։

— Վաղվանից կսկսենք կարել,— խոստացան դերձակները։

Եվ ես գնացի։

Երբ տուն հասա, արդեն երեկո էր։ Անտառը պատրաստվում էր քուն մտնել. լռեցին ծառերն ու թփուտները, գազաններն ու թռչունները։

Ես կերա սնկով թխված կարկանդակ, խմեցի հավամրգով թեյ և պառկեցի մամուռից պատրաստված փափուկ անկողնում։

Բայց քնել չկարողացա. անընդհատ մտածում էի Ալեքսանդրի բաճկոնի մասին։ Եվ հանկարծ հիշեցի, որ դերձակներին մոռացել եմ ասել, թե Ալեքսանդրին հատկապես ինչպիսի բաճկոն է դուր գալիս։

Ես վեր կացա ու նորից ճանապարհ ընկա դեպի արհեստանոց։ Բայց այնտեղ ոչ ոք չկար. ոչ օձիքներ կարող Ոզնին, ոչ գրպաններ կարող Գայլը, ոչ թևքերի մասնագետ Արջը, ոչ կոճակներ կարող Նապաստակը, ոչ աստառ կարող Գորշուկը, բոլորը գնացել էին իրենց տները։

Գայլն ապրում էր արևելքում, Ոզնին՝ արևմուտքում, Արջը՝ հյուսիսում, Նապաստակը՝ հարավում, իսկ Գորշուկը՝ անտառի կենտրոնում։

Ես գնացի արևմուտք և արթնացրի Ոզնուն.



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



— Ճի՞շտ էիր ասում, թե կարողանում ես օձիքներ կարել։

— Իհարկե, ամենասքանչելի՜ օձիքները։

— Իսկ այնպիսին, ինչպիսին Ալեքսանդրին է դուր գալի՞ս։

— Իսկ ինչպիսի՞ն է նրան դուր գալիս։

— Օձիքն, իհարկե, օձիքի նման թող լինի, բայց այնպես կարեք, որ հնարավոր լինի նաև ծամել։

Ոզնին մտածեց և ասաց.

— Ո՛չ, այդպիսի օձիքներ ես չեմ կարում,— և շուռ եկավ մյուս կողքին ու քնեց։

Ես գնացի արևելք, արթնացրի Գայլին։

— Ճի՞շտ էիր ասում, թե կարողանում ես գրպաններ կարել։

— Իհարկե, ամենադիմացկուն գրպանները։

— Իսկ այնպիսի գրպան, ինչպիսին Ալեքսանդրին է դուր գալի՞ս։

— Իսկ ինչպիսի՞ն է նրան դուր գալիս։

— Գրպանը, իհարկե, գրպանի նման թող լինի, բայց, որպեսզի նրանց մեջ տեղավորվի՝ խցան, բարդու ճյուղեր, կավի գնդիկներ, դանակի շղթա, շագանակներ, բաժակի բռնակ, հեսան, մոմի կտոր, փոքրիկ սրվակ, տուփի կափարիչ, գրչածայրեր, ջարդված գդալ, երկաթի կտոր, սիսեռի հատիկներ, հետո էլի...

— Բավակա՛ն է, բավակա՛ն է,— բղավեց Գայլը,— այդպիսի գրպաններ ես չեմ կարող կարել,— և ցույց տվեց դուռը։

Ես վազեցի դեպի հյուսիս, արթնացրի Արջին։

— Ճի՞շտ է, որ կարող ես թևքեր կարել։

— Իհարկե, ամեն տեսակի։

— Իսկ այնպիսին, ինչպիսին Ալեքսանդրին է դուր գալի՞ս։

— Իսկ ինչպիսի՞ն է նրան դուր գալիս։

— Թևերն, իհարկե, կարիր թևերի նման, բայց որպեսզի սեղան նստելիս հնարավոր լինի մտցնել ճաշի ափսեի մեջ։

— Այդպիսի թևեր չեմ կարող կարել, — մրթմրթաց Արջը և խնդրեց իրեն հանգիստ թողնել։

Ես վազեցի դեպի հարավ և արթնացրի Նապաստակին։

— Կարո՞ղ ես կոճակներ կարել։

— Մի՛ անհանգստացեք, այնպես կկարեմ, որ հարյուր տարի դիմանա։

— Իսկ այնպես, ինչպես Ալեքսանդրին է դուր գալի՞ս։

— Իսկ ինչպիսի՞ն է նրան դուր գալիս։

— Ինչպես բոլորինը, բայց որ հնարավոր լինի պոկել, կորցնել կամ նրանցով ճան խաղալ։

— Այդպիսի կոճակներ չեմ կարում, — և Նապաստակը այնպես զայրույթով նայեց ինձ, որ շտապեցի հեռանալ։

Այդ ժամանակ մտա անտառի խորքը և արթնացրի Գորշուկին.

— Դու կարո՞ղ ես աստառ կարել։

— Էն էլ ո՜նց։

— Իսկ այնպիսին, ինչպիսին Ալեքսանդրին է դուր գալի՞ս։

— Իսկ ինչպիսի՞ն է նրան դուր գալիս։

— Աստառը, իհարկե, աստառի նման լինի, բայց որպեսզի հնարավոր լինի նրանով սրբել չիրոտ, թանաքոտ, փոշոտ ձեռքերը։

Գորշուկն անմիջապես պատասխանեց.

— Այդպիսի աստառ ես չեմ կարում, — և դուռը շրխկացրեց երեսիս։

Ես խիստ վիրավորված եկա տուն և դերձակներին գրեցի մի այսպիսի նամակ. «Դուք ձեզ համարում եք ամենալավ դերձակները, բայց իրականում վատ վարպետներ եք։ Նույնիսկ շատ վատը։ Հեչ բանի պետք չեք։ Ահա բոլորը։ Վերջակետ»։

Ա՛յ, թե ինչպես եղավ, երեխաներ։ Ահա, թե ինչու իմ Ալեքսանդրը մնաց առանց բաճկոնի։

Ափսո՜ս, շատ ափսո՜ս...

Ռուս. թարգմ. Ք. ՄԻՐԽԱՎՈՅԱՆ

# Երեք ճագար

ՎԱՐԴԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Նկ. Հ. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆԻ

Ահա այսպես արթնանում ենք
Եղբայրներով երեք,
Մեր մարմինը վարժեցնում ենք,
Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք։

Ժամանակին մենք ուտում ենք,
Եղբայրներով երեք,
Եվ մեր այգում աշխատում ենք,
Մե՛կ, երկո՛ւ, եր՛եք։

Միշտ համերաշխ աշխատում ենք,
Եղբայրներով երեք,
Ե՛վ երգում ենք, և՛ պարում ենք,
Մ՛եկ, երկո՛ւ, երե՛ք։



# Մի քաղցր պատմություն

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

### 1. ԹԵ ԻՆՉՊԵՍ ՇԱՔԱՐԻ ԿՏՈՐԸ ԽՈՍԵՑ ԵՎ ԻՆՉԵՐ ՊԱՏՄԵՑ ՆԱ

— Մայրիկ ջան, մի կտոր շաքար տաս...,— խնդրեց Գեղամը: Մայրը նրան մի կտոր շաքար տվեց և ուղարկեց քնելու: Գեղամը գնաց մյուս սենյակը, և այն է, ուզում էր շաքարի կտորը բերանը տանել, երբ մի բարակ ձայն լսեց.

— Սպասիր, սպասիր,— ասաց ձայնը,—ինձ ուտելու ժամանակ շատ կունենաս, բայց նախ եկ ծանոթանանք. իմ անունը Քաղցրիկ է, ազգս՝ Շաքարյան:—Եվ շաքարի կտորն իր փոքրիկ թաթիկը մեկնեց Գեղամին:

Գեղամն աչքերը չռած նայում էր շաքարի կտորին ու չէր հավատում, որ այդ նա է խոսում: Բայց տղան իր զարմանքն հաղթահարեց ու ձեռքը մեկնելով, բռնեց Քաղցրիկի թաթիկը:

— Շատ ուրախ եմ, իմ անունն էլ Գեղամ է, բայց ասա, ինչպե՞ս է, որ դու խոսում ես:

— Ի՞նչ կա որ: Ես խոսելուց բացի ուրիշ շատ բան կարող եմ անել: Ուզո՞ւմ ես քեզ մի հետաքրքիր պատմություն պատմեմ:

— Մի՞թե դու էլ պատմություններ գիտես,—զարմացավ Գեղամը:—Ես պատմություններ շատ եմ սիրում:

— Իհարկե, գիտեմ,—հպարտությամբ ասաց Քաղցրիկը,—այն էլ ինչպիսի՜ պատմություններ...

— Զարմանալի է. ինքդ մի պստլիկ շաքարի կտոր, այդքան բան որտեղի՞ց կարող ես իմանալ:

— Հենց այդ է, որ պստլիկ եմ ու ճստլիկ եմ, իսկ դու, կարծես թե, շատ թերահավատն ես: Որ այդպես է, արի հիմա մի շատ հետաքրքիր ճանապարհորդություն կատարենք: Մի վախենա, ուր էլ լինես. ես միշտ քեզ հետ եմ, և մեզ ոչ ոք չի տեսնի: Համաձա՞յն ես...

— Համաձայն եմ, ես իսկի էլ վախկոտներից չեմ, ես արդեն պիոներ եմ:

— Դեհ, որ այդպես է, թռանք: Աչքերդ փակիր: Մե՜կ, երկո՜ւ...

### 2. ԱՐՏԱՍՈՎՈՐ ԹՌԻՉՔ ԴԵՊԻ ՀԻՆ ԴԱՐԵՐԸ

Գեղամն աչքերը բաց արեց ու ապշեց... Նրանք գտնվում էին մի բարձր ձյունապատ լեռան կատարին: Ներքևում տարածվում էին թավ անտառները: Դիմացը գեղատեսիլ դաշտավայրն էր փռվել, որի մեջտեղով անցնում էր մի մեծ գետ: Դաշտավայրի եզրին անտառներն ընդհատվում էին և սկսվում էին համատարած պտղատու այգիները: Այգիների մեջ թաղված, այստեղ ու այնտեղ երևում էին գյուղեր, քաղաքներ, ամրոցներ: Ներքևում, առաջին դաշտավայրից լեռնաշղթաներով անջատված, փռվել էր մի այլ դաշտավայր, որի արևմտյան մասում շողշողում էր հսկայական լիճը:

— Այս ի՞նչ է, Սևանի մոտե՞րքն ենք,—հարցրեց զարմացած Գեղամը:

— Ո՛չ, սիրելիս, Սևանը մնաց յոթ սարի ետևում: Իսկ սա Վանա լիճն է: Նրանից դեպի արևելք տարածվում է Վասպուրականի նահանգը: Նրա հյուսիս արևելյան մասում են գտնվում Ավարայրի դաշտը, Տղմուտ գետը: Իսկ մենք քեզ հետ գտնվում ենք Սասուն գավառում, հայկական Տավրոսի գագաթներին: Նայի՛ր՝ լեռնաշղթայի հարավ-արևելյան մասում ընկած այդ քարքարոտ գավառը Խութն է: Կարդացել ես, անշուշտ, «Սասունցի Դավիթը»:

— Ինչպե՞ս չէ, կուզես անգիր ասեմ,—վրա բերեց Գեղամը:

— Սրանք են ահա Դավթի, Մհերի, Սանասարի ու Բաղդասարի հարազատ վայրերը: Այստեղ է ապրել քաջ ու ազնիվ հերոս խութեցի Հովնանը:

Նրանք սկսեցին իջնել լեռան կատարից: Հաճախ սայթաքելով, գլորվելով, իրար թափ տալով ու ծիծաղելով հասան լեռնալանջի անտառներին, որտեղ հպարտ վեր էին սլանում հաստաբուն կաղնիներն



ու ընկուզենիները, օրորվում էին գանգրահեր թխկիները և արծաթատերև սոսիները:

### 3. ԽՈՐԱՄԱՆԿ ԱՂՎԵՍԸ: ԳԱԶՊԵ ՀԱՎԱՔՈՂ ԱՂՋԻԿՆԵՐԸ

Վաղ առավոտ էր: Զագրոս լեռնաշղթայի կատարից բարձրանում էր արևը: Հայկական Տավրոսի և Բարձր Հայքի լեռնագագաթները արշալույսի շողերով ողողված փայլում էին ոսկու նման: Վանա լճի հայելին ամեն րոպե փոխում էր իր երանգը, անտառները լռել էին: Օդն անշարժացել էր ասես, տերևն անգամ չէր դողում: Հանկարծ մի մեղմ քամի բարձրացավ և իր հետ թանձր մառախուղի ամպեր բերեց ու պարուրեց անտառը: Այժմ Քաղցրիկն ու Գեղամը զգուշությամբ իջնում էին, շոշափելով ոտքերի տակ շարժվող քարերը կամ մագլցելով ժայռերը: Քաղցրիկն այս ամենը կատարում էր այնպիսի ճարպկությամբ, որ Գեղամն առանց վախենալու հետևում էր նրան: Նրանք լիաթոք շնչում էին լեռնային թարմ օդը և շարժվում առաջ: Ամեն քարի, ամեն թփի տակից, ամեն մի փոսից, խոռերի ու ծաղիկների միջից աղբյուրներ էին բխում:

Անտառը լի էր եղնիկներով: Ուղղակի ոտքերի տակից փախչում էին անհագին նապաստակները: Թավուտներում լսվում էր կաքավների կղկղոցը: Երբեմն լսվում էր վարազների խռխռոցը: Իսկ հասուն տանձերով ծանրաբեռնված տանձենիների տակ ուրախ մրթմրթալով թավալվում էին արջի քոթոթները:

Հանկարծ Գեղամը կանգ առավ. մի շիկակարմիր աղվես, սիրունիկ դունչը ցցած, իր երկար-կարմիր լեզվով լիզում էր կաղնու կաթ ընկած ճյուղերը: Լիզում էր մեկը, հետո՝ մյուսը... Կարծես որոշել էր սրբել նրանց վրայի փոշին: Այդ ժամանակ լսվեց աղջիկների երգի ձայն: Աղվեսը շուրջը նայեց, դունչը լիզեց ու դժկամությամբ հեռացավ:

Լեռան լանջն ի վեր բարձրանում էին մի խումբ աղջիկներ, ծաղկանկար շրջազգեստներով, երիզավոր շալվարներով, գլուխներին ասեղնագործ գլխարկներ: Նրանցից շատերը ոտաբոբիկ էին, ոմանք էլ հագել էին թելերից գործված տրեխներ: Նրանք երգում էին արևին նվիրված ինչ-որ երգ: Աղջիկների մեջքերին կապված էին մեծ-մեծ զամբյուղներ: Հասնելով կաղնու թավուտին, նրանք ցած դրին զամբյուղները և սկսեցին կաղնու տերևներից արագ-արագ ինչ-որ բան հավաքել ու լցնել նրանց մեջ:

— Գազպե են հավաքում,—բացատրեց Քաղցրիկը,— տեսա՞ր այն մառախուղը, դա մառախուղ չէր, քամու օգնությամբ դաշտերից բերված ծաղկեփոշին էր: Նա նստեց կաղնիների ու թխկիների տերևներին, շաղախվեց ցողի կաթիլներով, խառնվեց տերևներից արտադրվող ածխաթթու գազի հետ և դարձավ քաղցր ու բուրավետ ծաղկեշաքար՝ գազպե: Այսպիսի երևույթ տեղի է ունենում մեծ մասամբ Հայաստանի այս մասերում: Այստեղ ոչ միայն մարդիկ, այլև կենդանիներն ու գազանները սնվում են գազպեով: Տեսա՞ր շիկավուն աղվեսին:

Մինչ այդ աղջիկներն ավարտեցին աշխատանքը, զամբյուղները շալակեցին ու վերադարձան եկած ճանապարհով:

Գեղամը մոտեցավ մի կաղնու: Նրա տերևներին հաստ շերտով նստած էր բաց կանաչավուն, փոշենման գազպեն: Գեղամը զգուշությամբ պոկեց կպչուն շերտը և բերանը տարավ. ինչ քա՜ղցր էր գազպեն, ինչ բուրավետ, մեղրից ավելի հաճելի...

### 4. ՀԵԹԱՆՈՍԱԿԱՆ ՏԱՃԱՐ

Հենց այգիների և անտառի սահմանագլխին նրանք նկատեցին կանաչների մեջ բարձրացած մի մարմարակերտ շինություն: Նա շրջապատված էր բազմաթիվ սյուներով, կտուրն անկյունավոր էր և քանդակազարդ: Մարմարյա սանդուղքները տանում էին դեպի պալատի մուտքը: Դահլիճի կենտրոնում՝ մարմարյա սեղանի վրա, բոցկլտում էր կրակը: Սպիտակ սաղավարտանման գլխարկներով, բրդյա երկար զգեստներ հագած, ինչ-որ մարդիկ պտտվում էին սեղանի շուրջը և երգում:

— Սա ի՞նչ բան է,—զարմացած և մի քիչ էլ վախեցած հարցրեց Գեղամը:

— Հեթանոսական տաճար է...

— Հեթանոսակա՞ն, ծիծաղո՞ւմ ես, ինչ է...

— Ո՛չ, սիրելիս: Մենք քեզ հետ շատ ետ ենք գնացել, այժմ մեր թվարկությունից առաջ չորրորդ դարն է: Հայաստանում և հարևան երկրներում իշխում է հեթանոսական կրոնը՝ կրակապաշտությունը: Սրանք էլ քուրմեր են՝ կրակի պաշտոնյաները:

— Ա՛յ, այնտեղ գետի մյուս ափին է գտնվում Անահիտ աստվածուհու մեհյանը, որտեղ դրված է այդ աստվածուհու ոսկեձույլ արձանը: Նրանից ոչ հեռու, Քարքե լեռան ստորոտում են գտնվում Հրածին Վահագնի, Գիսանե և Աստղիկ աստվածուհիների մեհյանները, իսկ ավելի հեռու...



— Սպասիր, սպասիր, այդ որքա՞ն աստվածներ կան...

— Շատ են, բարեկամս. բնության ուժերը չճանաչող մարդիկ աստվածացնում էին դրանք. նրանց պատվին հարյուր հազարավոր ստրուկների արյունով ու քրտինքով մեհյաններ էին կառուցում, այդ մեհյաններում աղոթում էին աստվածներին, որպեսզի նրանք երկար կյանք տան թագավորին, օգնեն պատերազմներում:

— Տես,—շարունակեց Քաղցրիկը.—այնտեղ. այգիներից վեր Զյունիկ քաղաքն է. մյուսը՝ ձորափին բազմածը. Օձն է: Այն ահավոր ժայռի կատարին թառել է Վիշապ քաղաքը: Ուղղակի գետափին. այգիների մեջ Մծուրն ու Մուշ քաղաքներն են: Իսկ բերդերը հապա. նայիր, ինչպիսի տեղերում են կառուցված, այնպիսի վիհերի եզրին, որոնք առանց բերդերի էլ անառիկ են: Նայիր, Արածանիի ափին երևում են Ողական ամրոցի ժանիքավոր անռելի պարիսպները:

Գեղամը մի քիչ ծանոթ էր պատմությանը, շատ էր սիրում պատմության գրքեր կարդալ: Բայց այն, ինչ նա տեսնում էր այժմ, վեր էր նրա բոլոր պատկերացումներից:

— Իսկ հիմա նայիր ուղիղ դիմացդ. ա՛յ այն ծխի ուղղությամբ. գիտե՞ս ինչ գյուղ է: Դա Հացեկացն է:

— Մեսրոպ Մաշտոցի ծննդավա՞յրը...

— Այո, նրա. որ մեզ համար գրեր ստեղծեց: Իսկ այն մյուս գյուղն էլ Խորնին է՝ հայոց պատմագրության հայր Մովսես Խորենացու ծննդավայրը: Բայց հիմա դեռ նրանք իսկի չեն էլ ծնվել. չէ՞ որ այժմ նրանց ծննդից 7—8 հարյուր տարի առաջ է:

Այդ ժամանակ տաճարին մոտեցավ գազպե հավաքող խումբը: Մառանապետը մոտեցավ, ստուգեց զամբյուղները, բաց արեց մառանի կնքված դուռը: Աղջիկներն իրենց զամբյուղների պարունակությունը դատարկեցին մեծ տաշտակի մեջ և կըրկին բռնեցին անտառի ճանապարհը:

— Տեսնո՞ւմ ես,—ասաց Քաղցրիկը,—այս խեղճերը չարչարվում են, քրտնում, առավոտից-երեկո գազպե են հավաքում, իբր թե աստվածների համար: Այնինչ քուրմերը ուտում են, քեֆ նեռւմ, իսկ մի մասն էլ փոխանակում են այլ բարիքների հետ:

## 5. ՄՈՒՇ: ԻՆՉՊԵՍ ԷՐ ԵՓՎՈՒՄ ԳԱԶՊԵՆ ԵՎ ՈՒՐ ԷՐ ՈՒՂԱՐԿՎՈՒՄ

Այսպես զրուցելով նրանք հասան Մուշ: Քաղաքը շրջապատված էր ժանիքավոր պարիսպներով: Բազմաթիվ դռներից անընդհատ ներս ու դուրս էին անում հետիոտն և ձիավոր մարդիկ: Նրանց մեծ մասը աղքատիկ էր հագնված. մի երկար, բրդյա պատառոտած վերարկու և կաշվե կամ պարանե տրեխներ: Իսկ ոմանք էլ հագել էին երկարաճիտ կոշիկներ, կարճ, ոսկեզօծ վերնազգեստ, դրել սրածայր գդակներ: Նրանց գոտիներից կախված էին ոսկով ու արծաթով զարդարված դաշույններ, կապարճներ, իսկ ուսերից՝ լայնալիճ աղեղներ:

— Սրանք հարուստներն են՝ ավագանին,—բացատրրեց Քաղցրիկը,—իսկ այն մյուսները գյուղացիներն են և ստրուկները: Մի զարմանա, այժմ դեռ ստրկատիրական շրջանն է:

— Այսքան հարստության մեջ այսպիսի թշվառություն...

— Այդպես է ստրկության օրենքը,—ասաց Քաղցրիկը:

Փողոցների երկայնքով ձգվում էին արհեստանոցները:

— Սրանք կոչվում են «Գործոց տներ». այստեղ աշխատում են ստրուկները, կամ հանցանքի համար պատժված գեղջուկները:



Մի տեղ զինագործները երկաթ, պղինձ ու կապար էին ձուլում և գեղեցիկ վահաններ, նիզակներ ու դաշույններ պատրաստում: Ոսկերիչները ոսկե և արծաթե սպասքներ էին նկարազարդում: Կաշեգործների հմուտ ձեռքերում մազմզոտ մորթին դառնում էր մաշկված, փայլուն կաշի և ստանում կարմիր, կանաչ, սպիտակ ու ոսկեգույն երանգներ: Հարևան արհեստանոցում այդ կաշվից գեղեցիկ կոշիկներ էին կարում: Բրուտները պտտվող դազգահների վրա փոքրիկ կուլաներ, կժեր, գավաթներ, ափսեներ և հսկայական կարասներ էին պատրաստում: Ջուլհակների ձեռքերը մեքենաների նման անընդհատ սահեցնում էին մաքոքը: Նրանցից ոչ հեռու աշխատում էին գորգագործները: Քարտաշները քարի հսկայական բեկորների վրա երկաթե գործիքներով փորագրում էին թռչուններ, մրգեր, զամբյուղներ, առյուծներ ու արծիվներ...

Աջակողմյան արհեստանոցի բաց դռնից ելնող գոլորշու հետ մի ախորժելի բուրմունք էր գալիս: Քաղցրիկը Գեղամին հրեց այն կողմ: Ներսում, կաթսաների մեջ ինչ-որ բան էր եռում:

— Ա՛յ, դա հենց ինքը՝ գազպեն է, նույն գազպեն, որ մշուշի նման իջավ ծառերին, որի համը դու ինքդ տեսար: Գազպեն լինում է երկու տեսակի՝ հեղուկ և փոշի: Հեղուկ գազպեն խմում են, կամ եռացնելով թանձրացնում և խմորեղեններ պատրաստում: Իսկ փոշի գազպեն մի փոքր տաքացնելու դեպքում հալչում է, հետո սառչում, դառնում է ապակու նման: Այն կտրատում են և կոնֆետի, կամ շաքարի փոխարեն օգտագործում: Մեղրն էլ շաքար է: Եվ այստեղ շատ զարգացած է մեղվապահությունը, բայց ուրիշ բան է գազպեն, բուրավետ է, համեղ: Նա և՛ կոնֆետ է, և՛ մեղր, և՛ շաքար է, և՛ խմորեղեն:

— Ուրեմն, հենց սա՞ է օգտագործման մեջ մտած առաջին շաքարը...

— Սա այն է, ինչ մարդիկ օգտագործում էին այն ժամանակ, երբ ես դեռ չկայի: Ինձ փոխարինել են շաքարեղեգնի ցողունները, մեղրը, գազպեն...

Երկու հազար տարի անցավ, մինչև որ մարդիկ սովորեցին շաքար պատրաստել:

Քաղաքի հրապարակում պարում էր լարախաղացը: Ճրջիկ ձեռնածուն ցույց էր տալիս իր «հրաշքները»: Մի խումբ դիմակավոր դերասաններ ինչ-որ ներկայացում էին տալիս: Քաղաքից դուրս գյուղացիներն արորներով վարում էին հողը: Արևի տակ փայլում էին երկաթե խոփերը: Փրփրադեզ Եփրատի ափին տարուբերվում էր գերաններից պատրաստված կաշեպատ մի հսկայական լաստ: Գյուղացիները ափին դարսված մեծ-մեծ զամբյուղներն ու հակերը տեղափոխում էին լաստի վրա և դասավորում: Նրանք վերջում այնտեղ տարան նաև մի խումբ էշերի:

— Այդ հակերի մեջ,— ասաց Քաղցրիկը,— հայ վարպետների խեցե ամաններն ու արդուզարդի առարկաներն են՝ կիրպասը, գորգերը, սքանչելի մետաքսը, կաշին, բուրավետ գինին, մեղրը և, վերջապես, գազպեն... Սրանք կնավարկեն մինչև Միջագետք, կվաճառեն այս բարիքները, կվաճառեն նաև լաստի գերանները, կաշին կբարձեն էշերին ու հետիոտն կվերադառնան, քանի որ այս կատաղի գետի հոսանքն ի վեր նավարկելն անհնարին է: Հայաստանն իր արտադրանքը արտահանում է նաև Միջին Ասիա, Հնդկաստան...

Գեղամն աչքերին չէր հավատում, իսկ բերանում դեռ զգում էր հրաշալի գազպեի համն ու բույրը...

— Դե, առայժմ այսքանը բավական է,— ասաց Քաղցրիկը,—հիմա համոզվեցի՞ր, որ ես լավ պատմություններ գիտեմ: Այժմ կարող ես ինձ ուտել...

Գեղամը կարծես քնից նոր արթնացավ: Նա կանգնած էր սենյակի մեջտեղում, ձեռքին շաքարի փոքրիկ կտորը: Այդպես բավական երկար ժամանակ, մինչև նա շաքարի կտորը զգուշությամբ դրեց փոքրիկ պահարանի վրա և պառկեց քնելու: Երկար ժամանակ քունը չէր մոտենում Գեղամի աչքերին և նա տեսնում էր Մշո հեռու դաշտը, շիկավուն աղվեսին և գազպե հավաքող աղջիկներին...:



# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԾԱՂԻԿԸ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

Քանի՜-քանի ծանր հիվանդների էր բուժել բարի բժիշկ Ղեդը։ Բայց ահա իր կնոջը, ինչքան էլ որ չարչարվեց, չկարողացավ փրկել մահից։

Մնաց բժիշկ Ղեդը իր աղջկա՝ Ալմանայի հետ, որը մի բարեսիրտ ու քնքուշ աղջիկ էր, հոր միակ մխիթարությունը։

Ալմանան իր կյանքում ոչ ոքի չէր վիրավորել, չէր նեղացրել։ Ոչ մարդկանց, ոչ թռչուններին, ոչ կենդանիներին և ոչ էլ միջատներին։ Եթե հանկարծ նա մի հիվանդ կատու կամ շուն էր տեսնում, գրկում էր ու տանում տուն, խնամում էր այնքան, մինչև որ կենդանին առողջանար։

Բացի դրանից Ալմանան շատ էր սիրում ծաղիկներ։ Իր փոքրիկ այգում նա աճեցրել էր մեծ քանակությամբ գեղեցիկ ու բազմագույն ծաղիկներ, այնպիսի ծաղիկներ, ինչպիսիք չկային ուրիշ ոչ մի այգում։ Ալմանան խնամքով մաքրում էր հողը, ջրում, և այդ պատճառով էլ ծաղիկներն աճում էին ոչ թե օրեօր, այլ ժամ առ ժամ։

Չնայած Ալմանան բարի էր և հեզ, բայց նա ոչ ոքի չէր նվիրում իր սիրելի ծաղիկներից։

Մի երեկո Ալմանան մտավ իր ծաղկանոցը։ Շուրջը ամեն ինչ խաղաղ էր։ Հանկարծ նա զգաց, որ ինչ-որ մեկը թեթև կպավ իր ոտքին։ Աղջիկը ցած նայեց և զարմացավ...։ Մի անծանոթ ծաղիկ իր թերթիկներով կպել էր նրա ոտքին։

Եվ երբ Ալմանան առանց ուշադրություն դարձնելու ուզեց անցնել, հանկարծ ծաղիկը մարդկային լեզվով խոսեց.

— Սիրելի Ալմանա, մի՛ թող ինձ մենակ, ես մեղք եմ, պոկիր ինձ։ Միևնույն է, եթե դու չքաղես, ապա չար մարդիկ կպոկեն ինձ։ Ավելի լավ է, որ քո նուրբ ձեռքերով պոկես և տանես քեզ հետ։

Ալմանան հանեց նրան իր արմատներով, բերեց տուն ու տնկեց ծաղկամանի մեջ։

Հենց որ աղջիկը ջրեց նրան և խնամեց՝ նախկին գորշագույն և թառամած ծաղիկը սկսեց բացվել ու փարթամանալ։ Վերջալույսի նման կարմրեց նա, իսկ թերթիկները այնպես ցոլացին, ասես արեգակի շողեր լինեին։

Ալմանան հիացած նայում էր ծաղկին։ Նա երբեք այնքան հրաշագեղ բան չէր տեսել։ Այդ ժամանակ ծաղիկը նորից խոսեց.

— Դու ինձ չպոկեցիր. միայն տեղս փոխեցիր, ջրեցիր ու խնամեցիր, ինձ կյանք պարգևեցիր։ Դու բարի ես, և քո բոլոր արածների համար ես կհատուցեմ։ Իմ ծաղկափոշին այնպիսի ուժ ունի, որ եթե տաս մեռնող հիվանդին, որին ոչ մի բժիշկ չի կարողանում բուժել, ապա նա երկու օրից հետո կառողջանա։ Բայց իմացիր, եթե հանկարծ որևէ մեկին հայտնես այս գաղտնիքը, ապա իմ փոշին հավերժ կկորցնի իր ուժը։ Ես իրավունք ունեի խոսել միայն երկու անգամ, դրանից հետո այլևս ոչ մի անգամ էլ չեմ կարող խոսել,— ասաց կախարդական ծաղիկը ու լռեց։

Այդ օրվանից Ալմանան սրտատրոփ սպասում էր, թե երբ պետք է առիթ լինի, որ փորձի իր ծաղկի փոշու կախարդական ուժը։

Եվ ահա մի օր նրա հայրը տուն եկավ շատ մռայլ։

— Հայրի՛կ,— հարցրեց նրան Ալմանան,— ինչո՞ւ ես այդպես տխուր։

— Ճի՛շտ է սիրտդ գուշակում, աղջիկս, իրոք ես տխուր եմ, իսկ տխո՞ւր եմ, որով-






հետև ոչ մի կերպ չեմ կարողանում գյուտնել մի հիվանդի, իսկ նա այսօր կամ վաղը կմահանա, և նրա ութ երեխաները, կինը և մայրը կմնան անտեր ու քաղցած։

— Հայրիկ,—ասաց Ալմանան,—հայրիկ, ես ցանկանում եմ տեսնել քո դժբախտ հիվանդին, տար ինձ նրա մոտ։

Բժիշկ Ղեդը զարմացած նայեց աղջկան.

— Սիրելի Ալմանա, ինչ է պատահել, ինչո՞ւ է քո բարի սիրտը ուզում տեսնել մահացող հիվանդին։

— Ինձ թվում է, որ եթե ես տեսնեմ հիվանդին, ապա նա կառողջանա։

Սակայն բժիշկ Ղեդը լսել անգամ չէր ուզում այդ մասին։ Նա չէր ուզում, որ Ալմանան տեսներ ծանր հիվանդին։ Բայց երբ տեսավ, թե ինչպես էր արցունքները աչքերին աղջիկը աղերսում, վերջապես համաձայնեց.

Հիվանդը փակ աչքերով պառկած էր իր մահճակալին և ծանր շնչում էր։ Նրա թույլ ձեռքերը ընկած էին վերմակի վրա։ Տնեցիները խմբվել էին նրա շուրջը և բոպե առ րոպե սպասում էին նրա մահվանը։

Ալմանան մոտեցավ ու մեռնողին աննկատ շնչելու տվեց իր կախարդական ծաղկի փոշին։ Մի քանի վայրկյան անց հիվանդը կամաց բացեց աչքերը, շարժեց թույլ ձեռքերը և հազիվ լսելի ձայնով խնդրեց, որ իրեն ջուր տան, իսկ քիչ հետո ուտելիք խնդրեց։

Երկու օր անց հիվանդն արդեն ոտքի վրա էր և միանգամայն առողջ։

Բժիշկ Ղեդը զարմացել էր։ Ի՞նչ արեց Ալմանան, ինչպե՞ս եղավ, որ մահամերձ հիվանդը առողջացավ։ Ալմանան խնդրեց հորը, որ նա ոչինչ չհարցնի, այլ միայն իրեն էլ տանի անբուժելի հիվանդների մոտ։

Այսպես փոքրիկ և բարի Ալմանայի շնորհիվ, բժիշկ Ղեդի փառքը, որպես ամենալավ բժշկի, որի ձեռքի տակ ոչ մի հիվանդ չի մահանում, տարածվեց ամենուրեք։

* * *

Կնոջ մահից մի տարի անց, բժիշկ Ղեդը նորից ամուսնացավ։ Խորթ մայրը բարի կին էր և շատ լավ էր վարվում Ալմանայի հետ։ Ալմանան էլ իր հերթին սիրում էր խորթ մորը։

Բժիշկ Ղեդին մնում էր միայն տեսնել աղջրկա երջանկությունը և ուրախանալ։ Բայց այդ ամենին խանգարում էր մոր հետ եկած չար ու երես առած աղջիկը՝ Նանան։

Նանայի գալուց հետո Ալմանան կորցրեց իր հանգստությունը։ Նա ամբողջ ժամանակ լարված հետևում էր, որ Նանան չփչացներ իր հրաշագեղ ծաղիկները, թփերը, չտանջեր կատվին, չբռներ նուրբ ու գունավոր թիթեռնիկներին և թևահան չաներ նրանց։ Բայց ամենից շատ անհանգստանում էր իր կախարդական ծաղկի համար։

Խորթ մայրը մեծ հույսեր ուներ, որ իր աղջիկը, ապրելով Ալմանայի հետ միևնույն հարկի տակ, կդառնար նրա նման բարեհամբույր և հեզ։

Իսկ Ալմանան իր բոլոր խաղալիքները, տիկնիկները, ձեռագործերը և նկարները նվիրում էր Նանային, որը շատ մեծ սիրով ընդունում էր, բայց նորից ու նորից խընդրում էր, որ քույրը իրեն թույլ տա պարտեզում խաղալ։ Այդ ժամանակ Ալմանան քըրոջը վախեցնելու համար ասաց.

— Լավ, ես քեզ թույլ եմ տալիս, որ խաղաս իմ պարտեզում, միայն իմացիր, որ եթե հանկարծ փորձես պոկել մի ծաղիկ, ապա մատներիդ վրա գորտնուկներ կառաջանան։

Նանան հավատաց և այդ օրվանից վախենում էր ձեռք տալ ծաղիկներին։

Ալմանայի պարտեզը հատկապես ավելի էր գեղեցկանում և բազմերանգ դառնում վաղ աշնանը։ Իսկ երբ ցրտերը վրա էին հասնում, Ալմանան հավաքում էր իր ծաղիկների սերմերը եկող տարվա համար։

Այդ աշնանն էլ պարտեզը շատ գեղեցիկ էր։ Ծառերի կանաչ տերևները արդեն կարմրադեղնավուն և ոսկյա գույներ էին ստացել, իսկ ծաղիկները դարձել էին ավելի քնքուշ ու չքնաղ։ Ամբողջ օրը նրանց շուրջը թռչկոտում էին նրանց նման խայտաբղետ թիթեռնիկները։ Բալենիների ճյուղերին և յասամանների թփերում ուրախ ճռվողում էին ճնճղուկները։ Երեկոները այնտեղ լսվում էր ծղրիդների ուրախ երգը։

Այդպիսի օրերին Ալմանան երկար ժամանակ մեն-մենակ նստում էր պարտեզում և լսում նրանց անուշ ձայները։

Մի անգամ Ալմանան ինչ-որ գործով մի քանի րոպեով մտավ սենյակ։ Քիչ հետո նա նորից վերադարձավ պարտեզ և ի՞նչ տեսավ. բոլոր ծաղիկները պոկված ու թափված, իսկ քիչ հեռու՝ ձեռքին՝ սուր մկրատ, կանգնել էր խորթ քույրը՝ Նանան։

— Այդ ի՞նչ արեցիր,—հազիվ խոսեց Ալմանան,—չէ՞ որ մի քանի օր հետո պետք է հավաքեինք նրանց սերմերը։ Ի՞նչ պիտի անեմ եկող գարնանը։

Նանան կանգնել էր այնպես, կարծես ոչինչ չէր պատահել։

Ամբողջ ձմեռ Ալմանան հոգատար խնամում էր կախարդական ծաղիկը։ Նա վախենում էր, որ մի օր էլ Նանան այդ թանկարժեք ծաղիկը կպոկի։ Սակայն թաքցնել կախարդական ծաղիկը նա չէր կարող, չէ՞ որ այդ բույսը սիրում էր ջերմություն, օդ և լույս, Ալմանան ծաղիկը թաքցնում էր միայն այն ժամանակ, երբ հոր հետ բացակայում էր տնից։

Ալմանան հատկապես Նանայի համար սովորեց թղթե ծաղիկներ պատրաստել։ Բայց չար քույրը հենց տեղն ու տեղը փչացնում էր դրանք և դեն շպրտում։

— Ինչո՞ւ ես փչացնում,—հարցնում էր Ալմանան։

— Որովհետև նրանք թղթից են։



— Իսկ չէ՞ որ նրանց վրա ես աշխատանք եմ թափել, դու պետք է ոչ միայն ծաղիկները խնամես, այլև հարգես իմ աշխատանքը։

Ինքը՝ Նանան ոչինչ անել չգիտեր, միայն կարող էր պոկել և փչացնել։

Այսպես նրանք ապրեցին մինչև գարուն։

Մի օր Ալմանան վերցրեց իր սերմերը և գնաց պարտեզ, նրա հետ էր նաև Նանան։ Մայրիկը խնդրեց, որ նրանք տաք հագնվեն։ Դրսում քամի էր և դեռ ցուրտ։ Ալմանան լսեց մորը, իսկ Նանան ականջ չդրեց և պարտեզ դուրս եկավ գլխաբաց։ Այդ երեկո նա հիվանդացավ։

Հիվանդ Նանան դարձավ ավելի անտանելի և պահանջկոտ։ Նրա բոլոր ցանկությունները պետք է կատարվեին շտապ և արագ, իսկ եթե մի որևէ պատճառով չէին կարողանում կատարել, ապա նա լաց էր լինում, գոռում-գոչում, որից հիվանդությունը ավելի ու ավելի ծանրանում էր։

— Ալմանայի պարտեզի ծաղիկներից եմ ուզում,— մի անգամ պահանջեց նա։

Նրան ասացին, որ ծաղիկները այնքան վաղ դեռ չեն ծաղկել, որ նրանք լինում են ամռանը։ Նա ավելի ուժեղ լաց եղավ և պահանջեց այն ծաղիկը, որին Ալմանան պահում էր ծաղկամանում։

— Ո՛չ, այդ ծաղիկը ես չեմ կարող քեզ ընծայել,— պատասխանեց քույրը։

— Ինչ չարն ես դու,— հանդիմանեց խորթ մայրը,— մի՞թե չես տեսնում, որ նա օր-օրի վրա ծանրանում է։

— Ես նրան նվիրել եմ ամեն, ամեն ինչ, իսկ այդ ծաղիկը նրան չեմ տա։

Այս անգամ խոսակցության մեջ մտավ բժիշկը։ Նա պահանջեց, որ աղջիկը շտապ բերի ծաղկամանը։

— Տուր նրան քո ծաղիկը, թե չէ քեզ կվռնդեմ իմ տանից, ժլատ աղջիկ,— գոռաց հայրը։

Ոչ մի անգամ այսպես խիստ չէր վարվել հայրը Ալմանայի հետ։ Արցունքները աչքերին նա գնաց իր սիրելի ծաղկի մոտ։

Տեղ էր փնտրում, որ ծաղիկը թաքցներ, բայց զայրացած հայրը եկավ, բռնեց նրա թևից և հրամայեց ծաղիկը տանել հիվանդին։

Ալմանան այլևս չկարողացավ հակառակել հորը, նա սովոր չէր, որ հայրը այդպես վերաբերվեր իրեն։

Ալմանան վերցրեց ծաղիկը և տարավ Նանայի մոտ։

— Ա՛ռ, վերցրու քեզ, միայն խնդրում եմ իմ ծաղիկը չպոկես,— ասաց նա ծաղկամանը Նանային հանձնելիս։

Հենց որ ծաղիկը ընկավ խորթ քրոջ ձեռքը, նա իսկույն բռնեց ցողունից և տեղահան արեց, իսկ հետո պոկեց բոլոր թերթիկները։

Ալմանան սարսափահար ճչաց։ Աչքերի առաջ մթնեցին և նա ցած ընկավ։ Քիչ հետո, երբ ուշքի եկավ, տեսավ, թե ինչպես հրաշագեղ ծաղիկը Նանայի ձեռքերի մեջ թառամել էր և դարձել այնպես գորշ, ինչպես առաջին անգամ, երբ նրան պատահեց իր պարտեզում։

— Ամո՛թ քեզ, ամո՛թ, մի հասարակ և չընչին ծաղկի համար այդքան աղմուկ ես բարձրացնում,— նո՛րից կշտամբեցին նրան հայրն ու խորթ մայրը։

Ալմանան ոչինչ չպատասխանեց, նրա համար ամեն ինչ միևնույն էր արդեն։ Չկար այլևս կախարդական ծաղիկը։

Մյուս առավոտ բժիշկ Ղոդը Ալմանային ասաց.

— Նանան մահամերձ է, նրան այլևս բուժել չեմ կարող, միայն դու, իմ Ալմանա, կարող ես նրան ազատել մահից։

— Հայրիկ, ես այլևս ոչ մի ուժ չունեմ նրան փրկելու։

— Մի՞թե, աղջիկս, այդ չնչին ծաղկի համար ուզում ես նրանից վրեժ լուծել։ Մեղք է քո քույրը, տես, թե ինչպես է նա տանջվում։

— Ո՛չ, հայրիկ, ես վրեժխնդրություն չունեմ, ես ամեն ինչ արեցի նրա փրկության համար, սակայն հիմա ոչինչ անել չեմ կարող։ Սրանից հետո ես երբեք քեզ օգնական չեմ կարո՛ղ լինել, իմ ամբողջ ուժը հենց այդ աննշան ծաղկի մեջ էր։






(Անգլիական ժողովրդական հեքիաթ)

Տիտտի մկնիկն ու Տետտի մկնիկը միասին ապրում էին մի տնակում։

Տիտտի մկնիկը գնաց հասկ հավաքելու, Տետտի մկնիկն էլ գնաց։

Տիտտի մկնիկը մի հասկ պոկեց, Տետտի մկնիկն էլ մի հասկ պոկեց։

Տիտտի մկնիկը սկսեց պուդինգ պատրաստել, Տետտի մկնիկն էլ սկսեց պուդինգ պատրաստել։

Տետտին իր պուդինգը դրեց եռացրած ջրով լիքը թջե կճուճի մեջ, որպեսզի եփվի, Տիտտին էլ պուդինգը դրեց թջե կճուճը, բայց կճուճը շուռ եկավ և եռացրած ջրով խաշեց Տիտտիին։

Տետտին նստեց ու աղի արցունքներով լաց եղավ։ Այդ ժամանակ եռոտանի աթոռը հարցրեց նրան.

— Ինչո՞ւ ես լալիս, Տետտի։



— Ա՜խ, — պատասխանեց Տետտին, — Տիտտին մահացավ, դրա համար էլ լալիս եմ։

— Իսկ ես կթռչեմ, — ասաց աթոռն ու թռչկոտեց։

Այդ ժամանակ տնակի մի անկյունից հատակի խոզանակը աթոռին հարցրեց.

— Աթո՛ռ, ա՛յ աթոռ, ինչո՞ւ ես թռչկոտում։

— Տիտտին մահացել է, Տետտին լալիս է, դրա համար էլ ես թռչկոտում եմ։

— Ես կավլեմ, — ասաց խոզանակն ու սկսեց հատակը ավլել։

— Սպասի՛ր, խոզանակ, — ասաց նրան դուռը, — դու ինչո՞ւ ես ավլում։

— Ա՜խ, — պատասխանեց խոզանակը, — Տիտտին մահացել է, Տետտին լալիս է, աթոռը թռչկոտում է, դրա համար էլ ես ավլում եմ։

— Իսկ ես կճռռամ, — ասաց դուռը և ճռռաց։

— Լսի՛ր, դուռ, ինչո՞ւ ես ճռռում, — հարցրեց պատուհանը։

— Ա՜խ, — պատասխանեց դուռը, — Տիտտին մահացել է, Տետտին լալիս է, աթոռը թռչկոտում է, խոզանակը ավլում է, դրա համար էլ ես ճռռում եմ։

— Իսկ ես կզրնգամ, — ասաց պատուհանն ու զրնգաց։

Բակում մի հին նստարան կար։ Երբ նստարանը լսեց, որ պատուհանը զրնգում է, հարցրեց.

— Պատուհան, ա՛յ պատուհան, ինչո՞ւ ես զրնգում։

— Ա՜խ, — պատասխանեց պատուհանը, — Տիտտին մահացել է, Տետտին լալիս է, աթոռը թռչկոտում է, խոզանակը ավլում է, դուռը ճռռում է, դրա համար էլ ես զրնգում եմ։

— Իսկ ես կփազվզեմ տան շուրջը, — ասաց նստարանն ու սկսեց վազվզել։

Պետք է ձեզ ասեմ, որ տան կողքին մի բարձր ընկուզենի էր աճում։ Ահա այդ ընկուզենին հարցնում է նստարանին.

— Նստարան, ա՛յ նստարան, ինչո՞ւ





ես տան շուրջը վազվզում։

— Ա՜խ, — պատասխանեց Նստարանը, — Տիտերին մահացել է, Տետերին լալիս է, աթոռը թաշկոտում է, խոզանակը ավլում է, դուռը ճռռում է, պատուհանը զրնգում է, դրա համար էլ ես վազվզում եմ տան շուրջը։

— Իսկ ես կթափեմ իմ տերևները, — ասաց ընկուզենին ու թափեց իր գեղեցիկ, կանաչ տերևները։

Ընկուզենու ճյուղին մի փոքրիկ ծիտիկ էր թառել։ Երբ նա տեսավ, որ ամբողջ ծառը տերևաթափ է եղել, հարցրեց.

— Ասա՛, ընկուզենի, ինչո՞ւ թափեցիր դու քո բոլոր տերևները։

— Ա՜խ, — պատասխանեց ընկուզենին, — Տիտերին մահացել է, Տետերին լալիս է, աթոռը թաշկոտում է, խոզանակը ավլում է, դուռը ճռռում է, պատուհանը զրնգում է, Նստարանը վազվզում է, դրա համար էլ ես տերևաթափ եղա։

— Իսկ ես կպոկեմ իմ բոլոր փետուրները, — ասաց ծիտիկն ու իր բոլոր սիրունիկ փետուրները պոկեց։

Այդ ժամանակ բակով մի փոքրիկ աղջիկ էր անցնում։ Նա մի կճուճ կաթ էր տանում իր եղբայրների ու քույրերի համար։ Երբ խեղճ ծիտիկին ամբողջովին փետրահան տեսավ, հարցրեց.

— Սիրելի ծիտիկ, ինչո՞ւ ես այդպես փետրաթափ։

— Ա՜խ, — պատասխանեց ծիտիկը, — Տիտերին մահացել է, Տետերին լալիս է, աթոռը թաշկոտում է, խոզանակը ավլում է, դուռը ճռռում է, պատուհանը զրնգում է, Նստարանը վազվզում է, ընկուզենին տերևաթափ է եղել, դրա համար էլ ես պոկեցի իմ փետուրները։

— Իսկ ես կաթը կթափեմ, — ասաց փոքրիկ աղջիկն ու կաթով լի կճուճը գետնով տվեց։

Բակում, աստիճանների ամենավերին ծայրին մի ծերուկ էր կանգնած։ Եղեգնով նա ծածկում էր խոտի դեզը։ Երբ ծերուկը տեսավ, որ փոքրիկ աղջիկը կաթը թափեց, հարցրեց.

— Ա՛յ աղջիկ, կաթը ինչու՞ թափեցիր։ Հիմա քո եղբայրներն ու քույրերը առանց ընթրելու կքնեն։

Եվ փոքրիկ աղջիկը պատասխանեց.

— Տիտերին մահացել է, Տետերին լալիս է, աթոռը թաշկոտում է, խոզանակը ավլում է, դուռը ճռռում է, պատուհանը զրնգում է, Նստարանը վազվզում է, կաղնին տերևաթափ է եղել, իսկ ծիտիկը փետրահան է եղել, դրա համար էլ ես թափեցի կաթը։

— Ա՜խ, այս ինչ դժբախտություն է, — ասաց ծերուկը, — իսկ ես շուռ կըտամ աստիճանները և ինձ կսպանեմ։

Եվ նա շուռ տվեց աստիճանները և իրեն սպանեց։

Այդ ժամանակ ընկուզենին աղմուկով տապալվեց գետին և տակովն արեց հին Նստարանն ու տունը։ Տունն էլ փուլ եկավ, պատուհանը դուրս թռավ. իսկ խոզանակը աթոռը շուռ տվեց և խեղճ փոքրիկ մկնիկ Տետերին մեռավ ավերակների տակ։

Ռուս. թարգմ. ՄԻՔԱՅԵԼԵ ՌԱՇԻԴ



# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ




## „ՃՇՄԱՐՏԱԽՈՍ ՍՎԵՆԸ"

Դուռը կամացուկ բախեցին: Մայրը մտահոգ վեր կացավ տեղից: Ներս մտավ Ռուբիկը՝ Հռիփսիմե մայրիկի ավագ որդին, նա շտապ վերարկուն հանեց ու առանց բերանը մի բան դնելու պատրաստվեց քնելու:

— Այսպես շարունակել, որդիս, չի կարելի,— լսեց նա մոր կերկերուն ձայնը,— կյանքում ամեն ինչ չափ ու սահման պիտի ունենա: Առավոտից տուն չես մտել. ամբողջ օրը անհոգ թափառում ես դրսում:

Ռուբիկը դժկամությամբ էր լսում մորը ու փորձեց առարկել.

— Մայրիկ, միշտ ինչ-որ բան ես ակնարկում, բայց այսքան ժամանակ մի վատ բան լսե՞լ ես իմ մասին. ման եմ եկել տղաների հետ. ի՞նչ եմ արել, որ միշտ այդքան խիստ վիրավորում ու նախատում ես ինձ:

— Ճիշտ է, չեմ լսել, վատ բան չես արել, բայց իմացիր, եթե այդպես շարունակես, անպայման այդ վատն էլ կլսեմ: Իզուր չէ ժողովուրդն ասել, որ ծուլությունը բոլոր արատների մայրն է:

Ա՛յ, դեռ երկու օր առաջ էր, որ քույրդ՝ Կարինեն գրադարանից բերած գրքում կարդաց տասնմեկ տարեկան աշխատասեր Սվենի պատմությունը: Արևի ու խաղի կարոտ այդ փոքրիկը իր աշխատասիրության շնորհիվ փրկում է սովի մատնված բազմանդամ ընտանիքը: Եվ օտար ափերում երջանկություն որոնող փոքրիկ Սվենը իր նպատակին է հասնում միայն և միայն աշխատանքի միջոցով:

Ռուբիկը ամաչեց ու կարմրեց:

Ռուբիկի մոր բերած օրինակը փոքրիկ Սվենի մասին, մի հեքիաթ է, որ կգտնեք վերջերս հրատարակված «Ճշմարտախոս Սվենը» հեքիաթների ժողովածուում՝ «Հայրենի տան մեխը» վերնագրի տակ:

Այդ նույն ժողովածուում դուք կգտնեք ուրիշ հետաքրքրական հեքիաթներ ևս: Նրանց հերոսները ձեզ նման փոքրիկներ են, որ իրենց աշխատասիրության, համեստության ու ճշմարտախոսության շնորհիվ լավ օրինակ կարող են ծառայել բոլորին:

*Կ. Քացախյան*

## „ՎԱՉԵ ՉԻՆԱՐՅԱՆ"

Ծեփորի տագնապալից հընչյունները մի ակնթարթում ոտքի հանեցին ամբողջ ճամբարը: Անհայտացել էր Վաչեն: Եվ այդ լուրը այնքան անսպասելի էր ու հանելուկային, որ բոլորն էլ անհանգստացել էին: Մի քանի րոպե հետո ճամբարը դատարկվեց: Վանանց ձորում մնացին սպիտակ վրանները, բլրակի վրա ծածանվող կարմիր դրոշակը և նրա մոտ հերթապահող պիոները: Ջոկատավար Սեդրակի, խոհարար Զալոնց Զանոյի, բժշկուհի Զինաիդա Սերգեևնայի և մյուսների գլխավորությամբ պիոներները հետախույզ խմբեր կազմեցին ու դուրս եկան որոնումների: Անտառի արահետները նրանց շատ հեռացրին ճամբարից: Խավարը ոմանց վախեցնում էր, իսկ ձեռքի լապտերի լույսը ավելի խորհրդավոր էր դարձնում շրջապատը:

Այսպես է սկսվում Վազգեն Ամիրբեկյանի «Վաչե Չինարյան» վիպակը, որը պատկերում է Կիրովականի Վանանց ձորի պիոներական ճամբարի հետաքրքիր առօրյան, պատանիների ու աղջիկների ջերմ ընկերասիրությունը:

Երբ սկսում ես կարդալ այս գիրքը, էլ չես կարող փակել, քեզ անվերջ նորանոր հարցեր են հետաքրքրում: Անհամբերությամբ ուզում ես իմանալ, թե հետախույզ խմբերը կարողացա՞ն արդյոք գտնել Վաչեին, ինչպե՞ս էր պատահել, որ Վաչեն կորել էր. ի՞նչ էր անում նա ցեխերի մեջ, ի՞նչ կրակ էր փնտրում և այլն. և այլն:

Վիպակի գլխավոր հերոսը՝ Վաչեն աշխույժ, աշխատասեր ու անհանգիստ մտքի տեր պատանի է: Ավարտելով միջնակարգ դպրոցը, նա աշխատանքի է ընդունվում քիմիական կոմբինատում: Այստեղ էլ նրա որոնող միտքը հանգիստ չի մնում: Նա հնարում է պտտվող հնոց, որը հեշտացնում է աշխատանքը և մի քանի անգամ շատ արտադրանք տալիս:

Վաչեի հետ կողք-կողքի կոմբինատում աշխատում են միջնակարգ դպրոցն ավարտած բազմաթիվ տղաներ ու աղջիկներ: Այստեղ են նաև Վաչեի ճամբարային ընկերները՝ Կորյունը, Աստղը, Ավետիսը. Հրանտը, ջոկատավար Սեդրակը: Մոսկվայում սովորելուց հետո կոմբինատ է գալիս նաև քիմիայի ուսուցիչ և ճամբարի պետ Մոսինյանը: Արտադրության մեջ ավելի է ամրապնդվում նախկին ճամբարականների ընկերությունը և նրանց համար լայնորեն բացվում են նորանոր հորիզոններ:

Վ. Ամիրբեկյանի «Վաչե Չինարյան» վիպակը կարդացվում է մեծ հետաքրքրությամբ: Կարդացե՛ք այդ գիրքը:




## ՆԵՐԿԱՅԱՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ

Պատկերացրու, նստել ես թատրոնում և շունչդ պահած դիտում ես ներկայացումը: Իսկ բեմի վրա տեղի են ունենում կլանող դեպքեր, ծովահենները գերել են անվեհեր պատանուն:

— Ասա՛, ո՞ւր էր լողում քո առագաստանավը,— բղավում են նրանք:

Գերին լռում է:

— Կպատասխանե՞ս, թե չէ:

Լարված լռություն է: Եվ հանկարծ պատանին ինչ-որ բան է ասում. Բայց դու ոչինչ չես լսում. այդ ամենահետաքրքիր տեղում ինչ-որ մի կատակասեր տղա հետևից մոտենում և ձեռքի ափերով փակում է ականջներդ: Դե, ի՞նչ կարելի է անել այդպիսի անհամ կատակասերին: Նա երևի նույնիսկ կարծել է, որ իր կատակը քեզ հաճույք կպատճառի: Լա՜վ հաճույք է, ինչպես չէ: Դրանից քո տրամադրությունն այնպես է ընկնում, որ ներկայացման մնացած մասը արդեն չի էլ հետաքրքրում քեզ:

Լինում է և այսպես:

Մի անգամ, ցերեկային ներկայացման ժամանակ իմ հետևը նստած էին երկու աղջիկ: Նրանց ծնկներին պաքսիմաթով լի մի ծրար էր դրված: Աղջիկները լարված ուշադրությամբ նայում էին բեմին և ծամում պաքսիմաթը: Ծրարի թուղթը խշշում էր, պաքսիմաթը քրթքրթում: Եվ դա բավական չէ: Աղջիկներից մեկը ժամանակ առ ժամանակ դառնում էր ընկերուհուն.

— Համեղ է, չէ՞:

Այդ աղջիկները չէին էլ մտածում, որ խանգարում էին իրենց շուրջը նստածներին: Բայց չէ՞ որ նրանց արածը համարյա նույն բանն էր, ինչ որ նախորդ «կատակասերի» կատակը:

Այսպիսի հանդիսականները իրենց վարքով ցույց են տալիս միայն, որ չեն հարգում դերասաններին, չեն գնահատում նրանց արվեստը: Ավելին. դրանով նրանք խանգարում են դերասաններին, շեղում նրանց ուշադրությունը: Ով թեկուզ մի անգամ խաղացել է բեմի վրա, լավ կիմանա, թե որքան բան է կախված դահլիճի վերաբերմունքից: Երբ դահլիճում ճռռում են աթոռները, հանդիսականները անընդհատ հազում են ու փսփսում, փոխում տեղերը, դերասանի ուշադրությունը ցրվում է, նա կորցնում է իր նկատմամբ ունեցած վստահությունը: Եվ ներկայացումը հաջող չի անցնում:

Մարդ միշտ թատրոն է գնում լավ տրամադրությամբ. չէ՞ որ հաճելի է դիտել հաջող, խելացի ներկայացումը, ծանոթանալ նրա հերոսների՝ զանազան հետաքրքիր մարդկանց հետ:

Եվ որքան ցավալի է, երբ տրամադրությունդ աստիճանաբար փչացնում են: Կամ հանդերձարանում տղաներից մեկը կհրի քեզ և իր վերարկուն առանց հերթի կհանձնի, կամ կգտնես քո տեղը ու կտեսնես, որ նա գրավել է ուրիշը: Հետո էլ՝ ներկայացման ժամանակ, կողքիցդ ինչ-որ մեկը կսկսի քչփչալ, ինչ-որ մի տեղ վայր կընկնի հանդերձարանի համարը, կամ մի ուշացած հանդիսատես իր տեղը գնալու համար կանցնի քո առջևով ու կծածկի բեմը: Այսպես, այս մանրուքները կամաց-կամաց կփչացնեն տրամադրությունդ: Եվ դու տուն կվերադառնաս չբավարարված, վատ տրամադրությամբ, թեև ներկայացումը վատը չէր...

Իսկ դու երբևէ մտածե՞լ ես այն մասին, թե ինչպես ես քեզ պահում թատրոնում, կինոյում կամ այլ հասարակական վայրում: Արդյոք, դու էլ քո վարքով չե՞ս փչացրել ուրիշների տրամադրությունը, հարգե՞լ ես դերասաններին ու դահլիճում նստած հանդիսականներին:Ապա լավ մտածիր, հիշիր:



## ՀԻՇԻՐ

1. Ներկայացումից մի՛ ուշանա: Աշխատիր սկսվելուց 10—15 րոպե առաջ թատրոնում լինել:

2. Պարտադիր չէ հատուկ «տոնական» զգեստներ հագնել: Կարելի է գնալ և դպրոցական համազգեստով: Բայց այն պետք է մաքուր լինի, լավ հարթուկած, սպիտակ օձիքով: Աղջիկները կարող են սպիտակ գոգնոց կապել: Կոշիկները պետք է լավ մաքրել-փայլեցնել:

3 Կարգերի արանքով քո տեղն անցնելիս երեսով դարձիր նստածների կողմը: Իսկ երբ դու մյուսներից շուտ ես եկել, վեր կաց և ճանապարհ տուր իրենց տեղը գնացողներին:

4. Ներկայացման ժամանակ մի՛ խոսիր: Քո կարծիքը ընկերոջդ կարող ես հայտնել ընդմիջմանը:

5. Հանդերձարանի համարը պահիր գրպանումդ և մի՛ խաղա նրա հետ, որովհետև նա վերջիվերջո վայր կընկնի, աղմուկ կհանի, կամ էլ կարող է կորչել:

6 Եթե քո տեղն զբաղված է, և զբաղեցնողը չի ուզում վեր կենալ, իզուր մի վիճիր: Դիմիր հսկիչին, և նա առանց աղմուկի կարգ կսահմանի:

7. Գործողության ընթացքում մի՛ կեր: Համբերիր մինչև ընդմիջումը:

8. Երաժշտության ժամանակ ոտքով մի՛ տկտկացնի:

9. Ծափահարիր միայն այն ժամանակ, երբ դա տեղին է: Ավելորդ աղմուկ մի՛ բարձրացրու:

10. Մինչև ներկայացման վերջանալը, տեղից մի՛ վեր կենա: Ներկայացումն ավարտված է համարվում, երբ վարագույրը փակվում է:




Բաժինը վարում է պրոֆեսոր Գիտունյանը

### «ՄԱՆՐԱԴԻՏԱԿ-ԿՈՄԲԱՅՆ»

Մանրէների աշխարհում մենք հանդիպում ենք այնպիսի բազմաբիվ բարդ երևույթների, որոնց ուսումնասիրությունը սովորական մանրադիտակով հնարավոր չէ: Պետք էր նոր մանրադիտակ գտնել: Եվ գիտնականները ստեղծեցին մի այնպիսի մանրադիտակ, որն իր հատկությունների շնորհիվ կարող է կոմբայն կոչվել: Նրա վրա կա զանազան նարմարանքների ու սարքերի մի մեծ կոմպլեկտ, որը հնարավորություն է տալիս ոչ միայն դիտել և ուսումնասիրել մանրէների աշխարհը, այլև կատարել հատուկ ֆոտո և կինոնկարահանումներ: Նկարահանումը կարելի է կատարել տարբեր արագություններով՝ մի վայրկյանում 75 կադրից մինչև 1 կադր 3 վայրկյանում: Դա մեծ հնարավորություններ է տալիս շատ դանդաղ կամ, ընդհակառակը, շատ արագ կատարվող պրոցեսները ուսումնասիրելու համար:

### ՌԱԴԻՈՂԵԿԱՎԱՐՈՒՄ

Ահա լճակի հայելանման մակերևույթի վրայով հանգիստ սահում է նավի մոդելը: Նա ինքնիրեն դարձումներ է կատարում, կանգ առնում ու կրկին ետ դառնում իր նախկին տեղը:

Այդ մոդելը ղեկավարվում է ռադիոյի միջոցով: Այժմ գոյություն ունեն նաև ռադիոյով ղեկավարվող ինքնաթիռ-ականներ, որոնք կարող են թռչել ցանկացած վայրը: Հատուկ ռադիոկայանը հաղորդում է «ռադիոալիք-հրամաններ»: Նավի մոդելի կամ ինքնաթիռ-ականի վրա եղած հատուկ սարքավորումները ընդունում են այդ «հրամանները» և ինքնուրույն կերպով կանգ առնում, փոխում ուղղությունը:

Այն հրթիռը, որը նախատեսվում է ուղարկել դեպի լուսին, նույնպես կկարգավորվի ռադիոյով: Նա պետք է հասնի լուսնին, ավտոմատ կերպով անհրաժեշտ նկարահանումներ կատարի ու նորից վերադառնա երկիր:

### ԺԱՆԱՊԱՐՀՈՐԴ-ԴՈՄՆԱ

Երեխանե՛ր, դուք երևի լսած կլինեք, որ դոմնային վառարանը շահագործման հանձնելուց հետո, առանց դադարի, առանց հանգչելու աշխատում է 5—8 տարի անընդհատ, մինչև որ նա հնանում կամ մաշվում է: Դրանից հետո այդ վառարանը քանդում են և հենց նույն տեղում կառուցում են նոր վառարան, քանի որ այդ տեղով արդեն անց են կացված անհրաժեշտ խողովակներ, օժանդակ մեխանիզմներ:

Նոր դոմնայի կառուցումը տևում է մինչև երեք ու կես ամիս, իսկ դրանից մետաղի ահագին կորուստ է լինում:

Ինչպե՞ս կանխել այդ կորուստը: Սովետական ինժեներները գտան դրա ելքը: Այժմ նոր դոմնան կառուցում են ոչ թե հնի տեղում, այլ նրա կողքին: Շինարարու-







թյան ընթացքում հին դոմնան շարունակում է աշխատել: Երբ նորը արդեն պատրաստ է լինում, հին դոմնան քանդում են և ամբարձիչների օգնությամբ նոր վառարանը դնում նրա տեղը:

Այդ նոր մեթոդը կիրառվել է Նովի-Տագիլի գործարանում:

## ՕԳՏԱԿԱՐ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ

Երեխանե՛ր, ձե՛ր առօրյա կյանքում դուք հաճախ այնպիսի դժվարությունների եք հանդիպում, որոնց լուծումը թվում է, թե անհնար է։ Ինձ հետ էլ էր այդպես, երբ ես փոքր էի: Հիշում եմ, մի անգամ, երբ ես տպել էի իմ կատարած լուսանկարները և չգիտեի, թե ինչպես չորացնել դրանք, քեռիս, տեսնելով իմ շփոթմունքը, ասաց.

—Իսկ դու փորձե՞լ ես նկարները չորացնել 3 լիտրանոց ապակե բանկայի պատերի վրա։

—Ինչպե՞ս։

—Նախքան չորացնելը, նկարները մի փոքր պահիր խմորի սոդայի թույլ լուծույթի մեջ, հետո նկարները պատկերի կողմով զգուշորեն փակցրու բանկայի վրա։ Եթե ուզում ես արագացնել չորացումը, ապա բանկայի մեջ տաք ջուր լցրու։

Ես, իհարկե, հետևեցի քեռուս խորհրդին և, երևակայեք, արդյունքները վատ չեղան։ Նկարները ստացան հայելանման փայլ։

Իսկ այժմ ես ուզում եմ ձեզ մի ուրիշ խորհուրդ էլ տալ: Ձեզնից շատերը երևի սիրում են սեղանի թենիս խաղալ։ Բայց նրանք հավանաբար չգիտեն, թե ինչպես կարելի է ուղղել սեղանի թենիսի ճխլված, բայց չփչացած գնդակը։ Դրա համար հարկավոր է այդպիսի գնդակը փայտիկի օգնությամբ իջեցնել եռացող ջրի մեջ և մի քանի րոպե պահել: Գնդակի միջի օդը կընդարձակվի և կուղղի ճխլված տեղը:

Դե, երեխաներ, եկեք այժմ բաժանվենք: Մենք նորից կհանդիպենք «Պիոների» հաջորդ համարում: Ցտեսությո՛ւն։

## ԱՅՍՏԵՂԻՑ-ԱՅՆՏԵՂԻՑ



Ճավա կղզում մի լիճ կա, որը պղպջակներ է արձակում: Լճի մակերևույթից բարձրացող գոլորշին ու գազերը պղպջակներին ուռցնում են տրամագծի վեց ֆուտ մեծությամբ: Վեր բարձրանալով, պղպջակները մեծ աղմուկով պայթում են։



Էգեյան ծովի Կիկլադյան կղզիների խմբի մեջ մտնող Կիմոլոս կղզու հողը կազմված է յուղոտ օճառային նյութից, որը կղզու բնակիչները՝ անհիշելի ժամանակներից ի վեր, օգտագործում են օճառի փոխարեն, նրանով լվացվում և լվացք են անում: Երբ անձրև է գալիս, կղզին ծածկվում է օճառի փրփուրով:



Գրեթե բոլոր թռչունները ջուրը կուլ տալու համար գլուխները հետ են գցում: Իսկ աղավնին ջուր է խմում ծծելով:



Հարավային Ամերիկայում մի զարմանալի բույս է աճում: Հենց որ սկսվում են երաշտները, այդ բույսը հողի միջից դուրս է քաշում իր արմատները և կծկվելով դառնում է մի փոքր կծիկ: Քամին քշում է կծիկը տեղից-տեղ, և երբ նրա ճանապարհորդության ժամանակ խոնավ տեղ է հանդիպում, նա նորից արձակում է արմատները և ստանում իր նախկին տեսքը: Բայց հենց որ նորից երաշտ է լինում, բույսը կրկին ճանապարհորդության է դուրս գալիս:



Զարմանալի հայտնագործություն է կատարվել Ավստրալիայում: 3 հազար մետր խորությամբ փորված հորատը հիմք է տալիս ենթադրելու, որ ավստրալիական մայր ցամաքի գոնե մեծ մասի տակ տարածվում է հսկայական ջրավազան: Մասնագետները գտնում են, որ նման քաղցրաջուր ծովեր կարող են լինել նաև մյուս մայր ցամաքների տակ:

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՇԱՇԿԻ

Այն շաշկին, որը դուք հաճախ խաղում եք, կոչվում է ռուսական կամ սովորական շաշկի: Բայց դուք գիտե՞ք, որ կան նաև շաշկիի այլ ձևեր: Կանադայում և Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում տարածված է, այսպես կոչված, կանադական շաշկին, որը խաղում են 144 քառակուսիներից բաղկացած խաղատախտակի վրա և յուրաքանչյուր խաղացող ունենում է շաշկիի 30-ական քար:

Սակայն աշխարհում ավելի մեծ տարածում է ստացել միջազգային շաշկին: Այդ խաղը ստեղծվել է 18-րդ դարում, Լեհաստանում և դրա համար էլ միաժամանակ կոչվում է լեհական շաշկի: 1894 թվականից սկսած, անց են կացվում միջազգային շաշկիի աշխարհի առաջնության մրցումներ: Առաջին չեմպիոնը եղել է ֆրանսիացի գրոսմայստեր Վեյսը, իսկ 1956 թվականին աշխարհի չեմպիոն դարձավ կանադացի գրոսմայստեր Դելորյեն:

Վերջին տարիներին միջազգային շաշկին լայն տարածում ստացավ նաև մեզ մոտ՝ Սովետական Միությունում: Անցյալ տարի Երևանում անցկացվեցին քաղաքի առաջնության մրցումներ, որտեղ առաջին տեղը գրավեց № 1 տեխնիկական ուսումնարանի սան Ստյոպա Բալայանը:

Միջազգային շաշկին գնալով խաղացողների ավելի լայն շրջաններ է ընդգրկում, և լավ կլիներ, որ դուք էլ ծանոթանայիք այդ խաղի կանոններին և սկսեիք խաղալ:

Միջազգային շաշկին խաղում են 100 քառակուսի ունեցող տախտակի վրա (յուրաքանչյուր կողմում 10-ական քառակուսի): Խաղացողն ունենում է շաշկու 20 սև կամ սպիտակ քար: Խաղացողը պարտված է համարվում, երբ նա զրկվում է իր բոլոր քարերից կամ ունեցած քարերը քայլ անելու հնարավորություն չեն ունենում:

Ետ կարելի է քայլել միայն այն դեպքում, երբ կա հարվածելու հնարավորություն: Ինչպես սովորական, այնպես էլ միջազգային շաշկիի մեջ «ֆուկ» անելը արգելված է, պետք է անպայման հարվածել: Խաղն սկսում են սպիտակները:

Միջազգային շաշկին սովորականից տարբերվում է հետևյալով:

1. Երբ ստեղծվում է հարվածի հնարավորություն տարբեր ուղղություններով և տարբեր քարերով, ապա խաղացողը պ ա ր տ ա դ ի ր կերպով պետք է ընտրի այն ուղղությունը և այն քարը, որով նա կարող է խփել «հակառակորդի» ամենից շատ քարերի:

2. Երբ շաշկիի քարը «հանգիստ» կամ «հարվածող» քայլով հասնում է «հակառակորդի» վերջին հորիզոնականին, նա վեր է ածվում տամայի, բայց տամայի իրավունքից օգտվում է «հակառակորդի» հաջորդ քայլից հետո միայն: Տաման կարող է շարժվել բոլոր ուղղություններով:

3. Եթե շաշկիի հասարակ քարը հարվածի ժամանակ մտնում է վերջին հորիզոնականը, բայց հարևան դաշտում նույնպես լինում է հարվածի հնարավորություն, ապա նա պարտադիր կերպով պետք է հարվածի: Այդ դեպքում նա չի կարող վերածվել տամայի և մնում է իր տեղը որպես հասարակ շաշկի:

Միջազգային շաշկիի մյուս կանոնները նույնն են, ինչ որ սովորական շաշկիի կանոնները:

Երեխանե՛ր, այժմ երբ դուք արդեն գիտեք միջազգային շաշկիի կանոնները, ինքներդ կարող եք պատրաստել խաղատախտակ և խաղալ: Վերցրեք ստվարաթղթի մի կտոր, բաժանեցեք 100 քառակուսու և ներկեցեք շախմատի տախտակի նման: Խաղալու համար ձեզ պետք է նաև 20 սև և 20 սպիտակ քարեր, որոնք նույնպես կարող եք ինքներդ պատրաստել:

ՀՈՒՍԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

(Շաշկիի ռեսպուբլիկական սեկցիայի նախագահ)

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԷՍՏԱՖԵՏԱ

Երեխանե՛ր, այս խաղը դուք կարող եք կազմակերպել դպրոցի բակում կամ ճամբարում: Դրա համար անհրաժեշտ է հաստ թղթից պատրաստել 30—40 հատ քարտ՝ 5×10 սմ մեծությամբ: Ապա վերցնել 15—20 քարտ և նրանցից յուրաքանչյուրի վրա գրել աշխարհագրական մի որևէ անուն: Միայն պետք է աշխատել, որ այդ անունները ընդգրկեն ողջ աշխարհը: Մնացած 15—20 քարտերի վրա կրկնեք այդ անունները: Ապա մի հարթ տեղում գծեք 8—10 մետր երկարությամբ երեք զուգահեռ գիծ՝ միմյանցից 5—6 մետր հեռավորությամբ: Մեջտեղի գծի կենտրոնում ամրացրեք հինգ հատ ձող՝ միմյանցից կես մետր հեռավորությամբ, սրանց վրա երկու կողմից գրեք հինգ աշխարհամասերի անունները և յուրաքանչյուր ձողի վրա երկու կողմից ամրացրեք արկղիկներ: Մեջտեղի գծի երկու ծայրերին դրեք մեկական արկղ, որոնց մեջ լցրեք ձեր պատրաստած քարտերը:



Խաղին կարող են մասնակցել 20—40 հոգի: Խաղացողներին պետք է բաժանել երկու հավասար խմբի, որոնք ուղիղ շարքով կանգնում են գծերի ետևում, ինչպես ցույց է տրված նկարում: Խաղավարի ազդանշանով յուրաքանչյուր խմբի առջևի կանգնածները պետք է արագ վազեն դեպի իրենցից աջ եղած արկղը, վերցնեն մեկ քարտ, կարդան աշխարհագրական անունը, մտքում որոշեն, թե, որ աշխարհամասում է գտնվում այն և քարտը դնեն այդ աշխարհամասին համապատասխանող՝ իր խմբի կողմը եղած արկղիկի մեջ: Երբ առաջին խաղացողները վերադառնան շարքի վերջը, անմիջապես խաղի մեջ կմտնի հաջորդ զույգը: Երբ խաղն ավարտվում է, խաղավարը մոտենում է կենտրոնի արկղիկներին և ստուգում, իր տեղում ճիշտ դրված յուրաքանչյուր քարտ խմբին բերում է մեկ միավոր: Բացի այդ, այն խումբը, որը ավելի շուտ է ավարտել խաղը, դրա համար նույնպես վաստակում է 3 միավոր: Հաղթող է ճանաչվում այն խումբը, որի միավորները շատ են լինում:

Կ. ՉԹՉՅԱՆ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝*

*ԱՐՄԵՆ ԳԱԼԵՆՑԻ*

(Երևանի № 63 դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ)




## ՔՈՒՅՐԵՐ ԵՎ ԵՂԲԱՅՐՆԵՐ

Տղան ունի այնքան քույրեր, որքան եղբայրներ, իսկ նրա քույրը երկու անգամ ավելի քիչ քույր ունի, քան՝ եղբայրներ։

Քանի՞ քույրեր և քանի՞ եղբայրներ կան այդ ընտանիքում։

## ԾԱՂԻԿՆԵՐ




Օգտվելով տրված սկզբնատառերից, համապատասխան ծաղիկների անուններով լրացրեք խաչբառի վանդակները։

*Կազմեց՝ Մ. ԲՈՋԱՐՅԱՆ*

## ՔԱՆԻ՞ ԽՈՐԱՆԱՐԴ ԿԱ

Այս ներկված խորանարդը բաժանված է փոքր խորանարդների, ինչպես ցույց է տրված նկարում։ **Ասացեք** (մտածելու համար տրվում է 1 րոպե ժամանակ).

ա) Քանի՞ չներկված խորանարդիկ կա։

բ) Քանի՞ խորանարդիկի միայն մի կողմն է ներկված։

գ) քանի՞ խորանարդիկի երկու կողմն է ներկված։

դ) քանի՞ խորանարդիկի երեք կողմն է ներկված։

## ԱՐԵՎՆ ՈՒ ԼԱՊՏԵՐԸ



Կարո՞ղ եք այս նկարներին նայելով, որոշել, թե նրանցից որի սյուներն են լուսավորված արևի և որինը՝ լապտերի լույսով։


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ. ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Ռ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕԶԱՆՅԱՆ Ա.։

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 04732. Պատվեր 600. Տպաքանակ 6000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 30/V 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ.

# ՉԱՅՆՎՈՐԴ

(Գրականություն և արվեստ)



1. Ռուս նշանավոր գրող, պատմաբան, 2. Նար-Դոսի վիպակներից, 3. հայ նշանավոր կոմպոզիտոր, 4. ռուս ականավոր բանաստեղծ, ռևոլյուցիոներ-դեմոկրատ, 5. «Բոռ» վեպի հեղինակ, 6. «Կարապի լիճը» բալետի հեղինակ, 7. նկարիչ, «Քրիստոսի հայտնությունը ժողովրդին» նկարի հեղինակ, 8. «Անահիտը» հեքիաթի հերոսներից, 9. լիտվական սովետական բանաստեղծուհի, 10. Րաֆֆու վեպերից, 11. ռուս պեյզաժիստ, 12. չիլիական ժամանակակից բանաստեղծ, 13. «Վերք Հայաստանի» վեպի հերոսներից, 14. հայ մեծ բանաստեղծ, 15. հայ ականավոր գրող, 16. երիտասարդական ամսագիր, 17. վրացական կինոֆիլմ, 18. Շիրվանզադեի ստեղծագործություններից, 19. ռուս մեծ դիմանկարիչ, 20. գրական ժանր, 21. «Ոսկե ձկնիկը» հեքիաթի հեղինակ, 22. Դեմիրճյանի հերոսներից:

*Կազմեց՝ դպրոցական Ց. ՂԱՆԴԻԼՅԱՆ*
*(Լենինական)*

## 25 ՔԱՌԱԿՈՒՍԻ

Այստեղ նկարված են տանձ, խնձոր, բալ, սալոր և խաղող։ Այդ մրգերը տեղավորեք քառակուսիների մեջ այնպես, որ յուրաքանչյուր հորիզոնական, ուղղահայաց և անկյունագծային շարքում դրանք չկրկնվեն:



*Առաջարկ՝ դպրոցականներ ԶՈՅԱ և ԴԱՎԻԹ ՀԱԿՈԲՅԱՆՆԵՐԻ (Ազիզբեկովի շրջան)*

## ՀԱՎԱՍԱՐ ՄԱՍԵՐ

Այս պատկերը բաժանեք ութ նույնանման և հավասար մասերի այնպես, որ յուրաքանչյուր մասում լինի միայն մեկ ծաղիկ:



*Առաջարկ՝ Վ. ՑԱՎՐՈՒՅԱՆԻ*

## Պատասխանում ենք

ՈՐ ՄԱՅՐԱՔԱՂԱՔՆ Է — *Տոկիոն։*

ԳՆԱՑՔԸ ԱՆՑՆՈՒՄ Է ԹՈՒՆԵԼՈՎ — *Եթե գնացքի արագությունը ժամում 30 կմ է, ուրեմն նա 1 կմ անցնում է 2 րոպեում։ Երբ շոգեքարշը դուրս կգա թունելից, գնացքի վերջին վագոնը նոր միայն կմտնի թունել։ Իսկ երբ վերջին վագոնն էլ դուրս կգա թունելից, շոգեքարշը 1 կմ էլ առաջ գնացած կլինի, այսինքն՝ շոգեքարշը կանցնի ընդամենը 2 կմ տարածություն։ Ուրեմն ամբողջ գնացքը թունելով կանցնի 4 րոպեում։*

«Պիոներ» № 5

ԲԱԺԱՆԵԼ ՀԱՎԱՍԱՐ ՄԱՍԵՐԻ

